# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱ-ԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից


## Այս համարում 10.87




*Հանձնված է արտադրության 03.08.87 թ.: Ստորագրված է տպագրության 24.09.87 թ.: ՎՖ 02564: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 66532: Պատվեր՝ 1633: Գինը՝ 15 կոպ.:*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 03.08.87 г. Подписано к печати 24.09.87 г. Формат 70×100 1/16. ВФ 02564. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 66532. Заказ 1633. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

Շապիկի 1-ին և 4-րդ էջերին՝
ՎԱՂԱՐՇԱԿ ԷԼԻԲԵԿՅԱՆ, «ԹԱՂԱՄԱՍ ՀԻՆ ԹԻՖԼԻՍՈՒՄ», «ՔԵՖՉԻՆԵՐԸ ՔՈՒՌ ԳԵՏԻ ՎՐԱ»


ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ




Կրկին սկսվեցին ամառային արձակուրդները, և հայրը մի քանի օր տղային իր հետ աշխատանքի էր տանում, մինչև կիրակի, երբ կարելի կլիներ նրան ուղարկել Սպիտակ, մորաքրոջ մոտ: «Կազատվեմ քեզանից գոնե մի երկու ամիս, հանգիստ շունչ կքաշեմ»,— ասում էր հայրը: Նա ինքնաթափով շինանյութ էր կրում արտադրական կոմբինատի հանգույցից մինչև կառույցը, մի կես ժամվա ճանապարհ էր, օրական տասնչորս-տասներկու անգամ գնում-գալիս էին, և դա արդեն ձանձրացրել էր տղային, սկսվել էին շոգերը, ինքնաթափի խցիկում տոթ էր:

Կեսօրին ճաշում էին բանվորական ճաշարանում: «Ինչո՞ւ նրան բանավանում չես թողնում»,— հարցնում էին վարորդները հորը: «Հը՛մ,— խնդում էր հայրը,— նա ամբողջ բանավանը կպայթեցնի և հետո էլ նրան մի ամբողջ օր պիտի փնտրես, որ գտնես»: Այո, այդ-

պիսի բան եղել էր: Անցած տարի, այս օրերին, տղան ու ընկերը հրթիռ էին պատրաստել. ինչ-որ բան սխալ էին հաշվարկել, հրթիռը թռավ ընդամենը մի քանի տասնյակ մետր, պայթեց, հարևան կանայք ճիչ ու աղաղակով դուրս թափվեցին: Ճիշտ է, կրակն արդեն մարել էր, բայց աճագին աղմուկ բարձրացավ, և տղան, գիտենալով, որ հայրը զայրացած կլինի, գիշերեց ընկերոջ տանը և, ըստ երևույթին, ճիշտ վարվեց. երբ հայրը գտավ տղային, արդեն այնքան էր մեղմացել, որ մոռացավ, թե հրթիռի արձակման համար ինչ պատիժ պիտի տար: «Մենք իրար հետ չենք կռվի,—ասաց հայրը:— Միայն թե դու այդ հրթիռի հիմարությունները գլխից հանիր: Դա լավ բանի չի հասցնի, աչքդ կվնասես կամ, սատանան գիտե...»: «Չէ, պապ,— ասաց տղան,— մենք հաշվարկի մեջ ինչ-որ սխալ ենք թույլ տվել, ագնիվ խոսք, թե չէ ամեն ինչ բարեհաջող կլիներ»: «Դու էլ հո գլուխ ունես,— ասաց հայրը,— կարգին հաշվիր, դպրոցում քեզ գովում են... Մի հրթիռն ի՞նչ է, որ չես կարողանում հաշվարկել»:

Ճաշարանում մի քանի վարորդներ խոսում էին այն մասին, որ «բետոնը մի կողմ է գնում»: Թե ի՞նչ էր նշանակում դա, տղան չհասկացավ, թեև ուշադիր ականջ էր դնում: Նրան դուր էր գալիս այդ աղմկոտ, ուրախ ժողովուրդը, դուր էր գալիս, թե ինչպես էին իրար հետ խոսում վարորդները բարձրաձայն, ընկերաբար, ասես ուրախացած, որ նորից հանդիպել էին իրար: Եկավ աշխղեկ Կանայանը, լսեց նրանց, ասաց. «Սա ի՞նչ ժողով է: Հիմա ժողովի ժամանակ չէ, գնացեք գործի: Ժողով կլինի, խոսեք...»:

Ճանապարհին կանգ առան ավանի տների մոտ: Այդպես հաճախ էր պատահում: Հայրն իջնում էր ծխախոտ գնելու կամ մի բաժակ ջերմուկ խմելու: Կանգ առան և այդ օրը, տղան հոր ձեռքից քաշելով տարավ նրան հանրախանութ. այստեղ նա տեսել էր մի խաղալիք, որը կոչվում էր «Մոտոկրոս»: Ցույց տվեց:

— Հետո ի՞նչ,— ասաց հայրը:— Դա քեզ ի՞նչ կտա... Քեզ մի քիչ ավելի խելացի խաղ է հարկավոր... Դու հիմա վեցերորդ դասարան ես փոխադրվել, քեզ ավելի խելացի բաներ պիտի հետաքրքրեն:

Տղային շատ էր դուր եկել «Մոտոկրոսը»: Նա ասաց.

— Գնիր, հայրիկ:

— Ծա՞տ ես ուզում,— հարցրեց հայրը:

— Գնիր,— կրկնեց տղան:

— Իսկ ի՞նչ արժե այդ «Մոտոկրոսը»,— հետաքրքրվեց հայրը:

— Տասնութ ռուբլի:

— Տասնութ ռուբլի,— կրկնեց հայրը:— Քիչ չէ, տասնութ ռուբլի: Աճագին փող է: Ես քեզ դեռ նոր հագուստ պիտի գնեմ, կոշիկներ: Քի՞չ բան կա գնելու,— ասաց հայրը:— Դու հո այդպես հին շորերով չե՞ս գնալու մորաքրոջդ մոտ...

Տղան այլևս չպնդեց:

Վարչության շենքի մոտ նորից հայտնըվեց Կանայանն ու դժգոհ հարցրեց.

— Սա ո՞ւմ տղան է:

— Իմն է,— ասաց հայրը:

— Քոնն է... Ինչո՞ւ ես նրան հետդ գործի բերում...

— Դասերը վերջացել են,— բացատրեց հայրը,— ես ստիպված եմ մի երկու օր նրան հետս վերցնել, մինչև ուղարկեմ մորաքրոջ մոտ...

— Այ քեզ գործ...— գրգռվեց աշխղեկը:— Իսկ եթե նրա հետ որևէ բան պատահի, ո՞վ է պատասխանատու: Իմ օձիքից պիտի բռնեն... Ինձանից պիտի պատասխան պահանջեն...Կառույցը մանկապարտեզ չէ... Վաղը ես նրան այստեղ չտեսնեմ...

Հայրը տղային իր հետ տարավ նաև հետևյալ օրը: Աշխղեկ Կանայանը միայն խեթ-խեթ նայեց և ոչինչ չասաց:

Ճաշին Կանայանը մի քանի վարորդի հետ նստած էր հարևան սեղանին: Նըկատելով հորը, նա ձայն տվեց.

— Հե՛յ, Պարսամ, առավոտվանից քեզ եմ փնտրում, եկ այստեղ:

Հայրն ու տղան մոտեցան սեղանին:

— Նստիր,— հրավիրեց Կանայանը:— Դու էլ նստիր,— ասաց նա տղային:— Հը՞, քեզ նման է...— ասաց նա հորը:— Անունը ի՞նչ է:

Տղան ասաց իր անունը:

— Այդպես,— ասաց Կանայանը,— նստիր մեզ մոտ:

Նստեցին: Կանայանը օղի լցրեց բաժակը, հրեց հոր կողմը: Հայրը ափի մեջ առավ բաժակը, նայեց տղայի կողմը, ափը հեռացրեց.

— Չեմ խմում,— ասաց,— աշխատելու եմ:

— Խմիր,— ասաց աշխղեկը,— այս-

տեղ որ կողմ էլ քշես, միևնույն է՝ ճանապարհը հարթ է…

— Պետք չէ,— ասաց հայրը:

— Դե լավ,— ասաց աշխղեկը,— ճաշիր մեզ հետ, ես հիմա նրա համար միրգ կբերեմ:

Նա ելավ, մտնեցավ խոհանոցի պատուհանին, քիչ հետո ետ եկավ՝ ձեռքին երկու ափսե բռնած, որոնցից մեկի մեջ խորոված միս էր, մյուսի մեջ՝ թարմ լվացած ծիրան: Ծիրանը դրեց տղայի դիմաց:

— Անուշ արա,— ասաց:— Բայց ինչքա՞ն նման է քեզ,— ասաց նա հորը,— ոնց որ մի խնձորը կիսես… Կեր,— ասաց նա հորը, ցույց տալով խորովածը,— կեր, քանի տաք է… Չես խմում,— ափսոսանքով ավելացրեց նա:

Հայրը մի հայացք գցեց տղայի կողմը, տղան ձևացավ, թե չի նկատում, և հայրը հասկացավ նրան:

— Պետք չէ,— ասաց նա:

Դուրս եկան ճաշարանից, մտնեցան ինքնաթափին:

— Պարսա՛մ,— նրա ետևից կանչեց աշխղեկը:

Ետ նայեցին. աշխղեկը գալիս էր նրանց կողմը, մոտեցավ, թևանցուկ արեց հորը.

— Լսիր, Պարսամ… Դու անցած ամիս ինչքա՞ն գցեցիր…

— Երկու հարյուր քսան,— ասաց հայրը:

— Երկու հարյուր քսան…— կրկնեց աշխղեկը:— Քիչ է, Պարսամ, քիչ է… Դու երեխա ունես…— Նա ափով շոյեց տղայի գլուխը.— Դա, իհարկե, քիչ է… Լսիր, Պարսամ… Ես մտածել եմ այդ մասին… Հասկանում ես… Այս գործից փող դուրս չի գալիս, ուզում ես՝ պայթիր… Այ, հիմա տղային պետք է ուղարկել որևէ զով տեղ… Ծոգերին նա այստեղ չի մնա:

— Չի մնա,— պատասխանեց հայրը:

— Իսկ դրա համար ի՞նչ է հարկավոր… Փող, այդպես չէ՞,— հարցը նա ուղղեց տղային, ու թեև տղան ոչինչ չըպատասխանեց, Կանայանը դարձավ հորը:— Այ, տեսնո՞ւմ ես, հասկանում է, փող է հարկավոր… Դե լսիր… Դու հիմա գնում ես բետոնի հանգույց… Ետ կգաս… Բանավանի կամրջի մոտ կանգնած կլինի Սաքանը՝ կեպիով, ճերմակ շալվար հագած, նա կասի՝ ես Սաքանն եմ… Ուրեմն այդ նա է… Ես նրա հետ խոսել եմ… Համաձայնության կգաք…

Տղան այս խոսակցությունից ոչինչ չէր հասկանում, բայց ներքին մի բնազդով զգում էր, որ դա լավ խոսակցություն չէ, ավելի ճիշտ՝ նրան դուր չէր գալիս այն տոնը, որով աշխղեկը խոսում էր հոր հետ: Նա քաշեց հոր թևքից:

— Սպասիր,— ասաց հայրը և հանկարծ հասկացավ, որ տղային պետք չէ լսել այդ խոսակցությունը:— Նստիր մեքենան: Դե, շուտ:

Տղան խցիկ բարձրացավ: Հայրն ընդամենը երկու խոսք փոխանակեց աշխղեկի հետ և նստեց ղեկի մոտ: Պոկվեցին տեղից: Գետին չհասած ասֆալտը վերջանում էր. այնուհետև ափամերձ ճանապարհով անցնելիս ծանր ավտոմեքենաները փոշու ամպեր էին բարձրացնում: Բավական էր, որ առջևից որևէ ավտոմեքենա գնար, ինքնաթափի առաջամասն ու խցիկը կորչում էին փոշու մեջ, ու տղան ամբողջ օրը, ատամների տակ զգում էր ավազի խշրտոցը…

— Բայց տես, առանց ինձ ոչ մի հըրթիռի արձակում,— հանկարծ ասաց հայրը:— Հասկանո՞ւմ ես՝ ինչ եմ ասում…

— Լավ,— ասաց տղան:

Տասնհինգ րոպե անց, թափքը բետոն լցրած, նրանք ետ էին վերադառնում: Բանավանը գետի մյուս կողմում էր: Կամրջի մոտ կանգնած էր մի մարդ, լայնեզր գլխարկը աչքերին քաշած: Նա բարձրացրեց ձեռքը, հայրը կանգնեցրեց մեքենան, իջավ, մոտեցավ նրան: Տղան ցատկեց խցիկից, գնաց հոր ետևից և քիչ հետո կանգնած լսում էր նրանց:

— Ես Սաքանն եմ,— ասաց մարդը,— աշխղեկ Կանայանը ձեզ ասել է իմ մասին..

— Ասել է,— հաստատեց հայրը:

— Դե, գնանք,— ասաց մարդը:

— Ո՞ւր գնանք,— հարցրեց հայրը:

— Մեքենան քշիր բանավան:

— Ինչո՞ւ,— հարցրեց հայրը:

— Հա՛,— ինչ-որ բան կռահեց մարդը,— մենք չխոսեցինք գնի մասին: Դե, ինչպես բոլորը,, մի թափքը՝ ութսուն ռուբլի, ընդունված գին է: Ինչքա՞ն է քո թափքում եղածը. չորս տոննա չի՞: Հիմա դրան ոչ ոք ավել չի տալիս, ընդունված գին է… Կարծում ես՝ ես շա՞տ ունեմ մեջը… Ինձ տասը ռուբլի թե մնա, լավ է…

— Ու թե ինչ…— ասաց հայրը:— Լըսիր, [illegible] քո աշխղեկ Կանայանին, որ



Նկարը՝ ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

քեզ հետ միասին գրողի ծոցը գնա…

— Ախ, գինը քեզ ձեռք չի՞ տալիս… Տեսնում ես…— ասես ինչ-որ կողմնակի մեկին դիմելով, ձայնը բարձրացրեց մարդը, թեև մոտերքում ոչ ոք չկար:— Մի սրան տեսեք… Գինը նրան ձեռ չի տալիս… Ագահի մեկը… Ի՞նչ է, ուզում ես, որ չորս տոննա բետոնին հարյուր ռուբլի՞ տամ… Ո՞վ է տեսել… Ագահի մեկը…

Տղային հետաքրքրում էր, թե այդ մարդու ամբարտավան գոռգոռոցին ինչ պիտի պատասխաներ հայրը, նայեց հոր դեմքին: Հայրը հրեց այդ մարդուն.

— Կորի՛ր այստեղից, մյուս անգամ այստեղ մեքենա չկանգնեցնես…

— Ինքդ մաքրվիր այստեղից, ագահի մեկը…— ասաց մարդը և հրեց հորը…

Հայրը հարվածեց, տղան դրան սպասում էր, ու ինքն էլ մեծագույն ցանկություն էր զգում խփելու այդ ամբարտավան, տհաճ մարդու դեմքին… Մայրը ետ-ետ գնաց, ընկավ գետնին, գլխարկը մի կողմ գլորվեց: Ապա ոտքի ելավ, վերցրեց գլխարկը, ուզեց առաջ գալ, սակայն զգալով, որ ստանալու է երկրորդ հարվածը, հանկարծ ետ դարձավ և սկսեց փախչել:

— Դու դեռ Կանայանին պատասխան կտա՛ս… Դու դեռ պատասխան կըտա՛ս…,— փախչելով բղավում էր նա: Այդպես վազելով հասավ մինչև բանավանի կամուրջը, հետո շուռ եկավ ու հեռվից նայում էր նրանց:

— Գնանք,— ասաց հայրը՝ քաշելով տղայի թևից:

Բարձրացան խցիկը, մեքենան կըտրուկ պոկվեց տեղից և միանգամից մեծ արագություն վերցրեց: Աջ կողմում գետըն էր, գետից այն կողմ, հեռվում՝ բանավանի շենքերը՝ թափանցիկ, տաք մուժի մեջ: Խցիկում հանդիպակաց քամին շոյում էր տղայի դեմքը: Հայրը լարված նայում էր առաջ, ճանապարհին, որ դատարկ էր: Նա հիշեց, թե ինչպես փախչող մարդը սպառնում էր իրեն և թե ինչպես հեռվում կանգնած, փոշոտ գըլխարկը ձեռքին, նայում էր իրենց, ու չըկարողացավ զսպել ծիծաղը, և ծիծաղն այնքան վարակիչ էր, որ տղան նույնպես սկսեց ծիծաղել, նրանք ծիծաղում էին բարձրաձայն, այնքան ուժգին, որ տեղում վեր-վեր էին թռչում:

Հետո երկուսն էլ լռեցին, ասես քրքջոցից կշտացած, նրանք լրջացան, և ամեն մեկը յուրովի մտածում էր կատարվածի մասին:

— Հիմա ես կխոսեմ ժողովում… Գիտեմ, թե ինչպես կխոսեմ… Սպասի՛ր Կանայան…— ասաց հայրը:

— Հայրիկ, բայց դու լավ հասկացրիր նրան,— ասաց տղան:

Հայրը նայեց տղային, կարծես առաջին անգամ, զարմացած նկատեց, որ տըղան ահագին բոյ է քաշել, որ նրա ուսը արդեն համարյա հասնում է իր ուսին, և առաջին անգամ զգաց, որ իր կողքին մեծանում է մի տղամարդ: Հայրը պարզեց ափը, տղան ձեռքը դրեց հոր ափի մեջ, և հայրը զգաց, որ տղան սեղմում է իր ձեռքը: Նա մի ձեռքով գրկեց տըղայի ուսերը, մյուսով շարունակում էր վարել ավտոմեքենան:

## ՀՐԱՉ ԹԱՄՐԱԶՅԱՆ



Աչքերդ՝ որպես տխուր առեղծված,
Արցունք են բխում հոգու աղբյուրից,
Այնտեղ իրիկվա ցոլքերը եղծված
Դողում են նրա մաքուր համբույրից:

Երկնուղիդ մեջ է գաղտնիքը քնած
Ու սիրող մեջ է հուշը ծվարել,
Նա երկնել է քեզ արցունքի նման
Ու երկնի մաքուր ճամփեքով տարել:

Դու թաթախված ես արարման լույսով,
Դու թաթախված ես ցավով ոգեղեն,
Դու, որ նախապես լոկ թրթիռ ու դող,
Ու նրա աչքի արցունքն ես եղել:



Աչքերդ՝ որպես տխուր առեղծված,
Արցունք են բխում հոգու աղբյուրից,
Այնտեղ իրիկվա ցոլքերը եղծված
Դողում են նրա վերին համբույրից:

Ինչքան է երկնի կապույտի նման
Վճիտ աչքերի մաքուր հայելին,
Մենք աչքերիդ մեջ տեսնում ենք նրան
Նա մեզ է տեսնում նրանց նայելիս:

Պահպանիր ընդմիշտ ինձ քո բիբի մեջ,
Աչքիդ սափորով նրան ընծայիր,
Որպես արցունք՝ դիր անհուն ափի մեջ,
Թող նոր գոյության թրթիռներ տա ինձ:



Աչքերդ՝ որպես տխուր առեղծված,
Արցունք են բխում հոգուդ աղբյուրից,
Այնտեղ իրիկվա ցոլքերը եղծված
Դողում են նրա մաքուր համբույրից:

Ու հեկեկացող ուսերի վրա
Երձկոն մի լուրթ շղարշ է առնում
Այնտեղ անհունը խնկում է նրան,
Այնտեղ բույրերը բուրյան են դառնում:

Այնտեղ լուսավոր մրմունջիդ առաջ
Գաղտնիքն է սիրող շուրթերը բացում,
Քո սրտի փխրուն արահետով է
Նա իր թափառիկ լույսը տարածում:

Քո սրտի փխրուն արահետով է
Նա երազաբույր մեզ այցի գալիս,
Բայց ես կորցրել եմ այդ արահետը,
Ոսկե հուռութքն ու զմրուխտ բանալին:

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ՆԱՐԱՊԵՏՅԱՆԻ



Գարնանամուտին,
երբ արարիչը
արթնացման քաղցր
խոսքեր է ասում,

ու նրա այրող,
տաք մրմունջներից
հունդերն են թաքուն
աչքերը բացում—

կգտնի նա ինձ
լույսով ողողված—
ցողի մի կաթիլ
վաղորդյան թասում...

Գարնանամուտին,
երբ արարիչը
արթնացման քաղցր,
խոսքեր է ասում,

ու արթնանում է
տառապյալ հողը
նշխար առ նշխար,
մասունք առ մասունք,

կգտնի նա ինձ
ծաղկաթերթի տակ—
Լույսից քողարկված
մի կաթիլ արցունք:



Արևը՝ հրես,
Մեծ խորոզի պես
Թռել-թառել է
Երկնի կտուրին:

Ու գյուղը՝ ասես
Մի նախշուն խլեզ՝
Փորն է դեմ արել
Ամռան արևին:

Ասա, իմ եզերք,
Ջվարթ մանկության
Ոսկի հեքիաթը
Որտե՞ղ է կենում:

Այս առավոտյան
Ես նրան տեսա
Մեր դեղձան կովի
Վճիտ աչքերում:



Կապույտ ծուխ է բարձրանում հողից,
լցվում է ռունգերդ, աչքերդ, հոգիդ—
Աշուն է:
Արթնանում են մոռացված երազի ստվերները,
արթնանում են ամբողջ կորուսյալ աշխարհներ,
տխուր ու գեղեցիկ է նրանց երթը—
Աշուն է:
Անտառն արևից վերջին հյութն է քամում,
քերծի մոտ արյուն է տալիս մասրենին—
Աշուն է:
Ծնկի ես իջնում հուշերիդ թափորի առջև—
Աշուն է:

ԱՂԱՍԻ ԱՅՎԱԶՅԱՆ

# ՊԱՀՊԱՆՎԱԾ ԷՋԵՐ

## Սմբատ Գայփոսցու «Հայոց բարոյականության պատմությունը» ձեռագրից

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Եգվիտների խիստ շունչը հասել էր Հայաստան, կամ Հայաստանն էր իր աղիլեղի վիճակով թափանցել եգվիտների աշխարհը: Երկրագունդը փոքր էր, կյանքը՝ տիեզերական: Երկրի վրա ու երկրից դուրս: Կաթոլիկ պապերը գիտեին այդ իրողությունը և իրենց կրոնը անվանել էին կաթոլիկ, այսինքն՝ համընդհանուր:

Պետրոս Ֆորմոզան՝ եգվիտների մեծ հավատաքննիչը, գործ ուներ հայերի հետ. հայերն էին բաժին ընկել նրան մարդկային խառնարանում: Հավատը մի կողմ էր մնացել, և կյանքը իր սովորական հունով էր ընթանում. ուժ, կամքի իշխանություն, շահ, վրեժի գործառնություն, պահի հաճույք... Պետրոս Ֆորմոզայի քարե պարկը եգվիտների հայաստանյան ձեռքբերումն էր, կաթոլիկության հայկական մակատեսքը: Ամենասոսկալին, անտանելին մութ հարցականն էր... Սպասումը մթության մեջ: Ի՞նչ է լինելու և ո՞ր կողմից: Հարվա՞ծ՝ քիթուբերանին, եռացրած ջո՞ւր՝ ոտքերին, կրա՞կ՝ մեջքին, ունելի՞՝ եղունգին, հա՞րց՝ ուղեղին... Սարսափելին անհայտությունն էր: Մարդուն իջեցնում էին նեղ միջանցքով մթության խորքը և երկար պահում դատարկության մեջ: Ու ապա մթության միջից հարցեր էին կրակում նրա վրա: Ու թե պետք էր լինում, երբ պատշաճ պատասխան չէին ստանում, մտցնում էին սև պարկի մեջ ու բարոյականը թարգմանում մարմնականի: Երանի թե ամեն ինչ միասին լիներ, բոլոր վախերն ու ցավերը՝ միանգամից:

Աստծո տեղ չէր մնում, ծեսի ու արարողության ձև չկար: Կար միայն սովորական վախ: Վախ, որ կամաց-կամաց ու հետևողականորեն ջլերը թուլացնում էր, ոսկորները հեռացնում իրարից, ու նրանց արանքը լցնում գարշապիղծ լորձունքով, ու մի աննշան շարժումից, թեթև մի ձայնից վետվետում էր լորձունքը, ու տաղտուկը դատարկում էր շրջապատը:

Համբերությունը սահման ունի, բայց նրա սահմանապահը հուսալքումն է, և մի օր հուսալքումը մեզ բոլորիս՝ երիտասարդ վանականներիս, մղեց խելառ ու ըմբոստ գործողության: Գաղտագողի թափանցեցինք Պետրոս Ֆորմոզայի առանձնանոցը, փարաջան գցեցինք գլխին, ծայրերը կապեցինք և տարանք քարե զնդանը:

Ու մեր նսեմացումն ու անձնահարումը, մեր մեջ կուտակված տարբեր բարդույթները, որ թերևս, կապ չունեին Ֆորմոզայի հետ և վերաբերում էին ճակատագրին ու երկնքին, հարված ու աքացի դարձան, ուղղվեցին փարաջայի միջի միս ու ոսկրին: Մեր վախը լրբանում էր, սանձազերծվում, կորցնում չափ ու սահման: Մեր տամուկ ահուդողը չորանում էր, ու կարծրանում էին նրա պոռթկումները, հարվածները միշտ առաջին ու վերջինն էին, ու այդպես՝ առաջին ու վերջին, կրկնվում էին անվերջ: Հարվածում էինք լուռ, լեզուներս ատամներիս տակ, միայն ոտքերիս ձայներն էին արձագանք տալիս քարե արկղում, ու միայն հավատաքննիչի խուլ ոռնոցներն էին ելք փնտրում կապակուռ փարաջայի մեջ: Դեռ հայհոյում էր, անիծում, ապա՝ սպառնում, իսկ հետո, նվաղելով, աստված կանչում: Փարաջայի



մեջ, ի վերջո, մարդու տառապանք էր, մարդու ձայն, և նա կապ չուներ արդեն Մեծ հավատաքննիչ Ֆորմոզայի հետ: Եվ ես չկարողացա այլևս լսել սիրտ կեղեքող, սիրտ շարժող նրա տնքոցը ու բառաձայնեցի.

— Հերիք է... Մեղք է, կմեռնի...

Իմ խոսքերից հետո մեկ հարված միայն տեղաց ուշացած, որովհետև մի ոտք չէր հասցրել լսել տիրոջ ուղեղին:

Եվ հեռացանք սուսուփուս, կարծես ոչինչ չէր պատահել, և ամեն մեկս խոնարհ ու բարեվարք շարունակեցինք կյանքը մեր խցերում:

Երկար ժամանակ Պետրոս Ֆորմոզան գամված էր իր մահճակալին ու թաքուն էր պահում ամոթալի ծեծը: Ու միայն երբեմն-երբեմն մռնչում էր. «Այս բո՜ հայերը... հեթանոս հայերը...»: Իսկ հետո, ոտքի ելնելով, հարցաքննում էր ու զընում, հոտոտում չորս բոլորը՝ կռահելուհայտնաբերելու համար սրբազան իր անձը կեղեքողներին: Իսկ մենք՝ հեզ ու համեստ, ասես անտեղյակ այդ բոլորից, խնամում էինք նրան հոգացողությամբ՝ որպես Քրիստոսի ամենաանվիրական աղանդի հավատարմատարներ:

Ու միայն մի անգամ ես ձայն հանեցի՝ առաջարկելով իմ թևը նրան զբոսանքի ժամանակ: Եվ այդքանը հերիք էր, որ հավատաքննիչը ճանաչեր իմ ձայնը:

— Այդ դո՞ւ էիր...— ասաց նա:— Դո՞ւ էիր չարչարում Քրիստոսի ծառային...

«Ես դադարեցրի կեղեքումը,— ուզում էի ասել նրան:— Ես խղճացի: Ես ասացի՝ հերիք է»:

Բայց կարևորը ոչ թե այն էր, որ իմ ձայնը փրկեց նրան, այլ այն, որ մատնեց ինձ: Ու մեծ հավատաքննիչը իմ անձը հանձնեց ինկվիզիցիայի ձեռքը:

Հարցերը աստծո անունից էին ու սատանայի, կեղեքումները կրակով էին ու մետաղով, անժամանակ ու անսպասելի, ընդմիջումները՝ ավելի ծանր, ուշաթափությունը՝ ·քրանելի:

Եվ հարվածների տարափի տակ ականջիս հասավ խզված մի ձայն, մենակ մի ձայն.

«Հերիք է, մեղք է, կմեռնի...»:

Ու հարվածները դադարեցին:

Ինձ բարձրացրեցին վեր, ու, այն բոլոր ժամանակ, երբ ես անշարժ պառկած էի, մշուշապատ գիտակցությանս մեջ տրոփում էին այդ միակ խոսքերը.

«Հերիք է, մեղք է, կմեռնի»...

ՋԵՅՄՍ ՋՈՅՍ (իռլանդացի գրող, 1882—1941)

# Երիտասարդ արվեստագետի դիմանկարը

(հատված վեպից)

Տղաները ծիծաղեցին, և Սթիվենն ըզգաց, որ նրանք մի քիչ վախեցած էին: Գորշ, մառախլապատ օդի մեջ լսվում էր կրիկետի ձայնը՝ պոկ... Այդ հարվածի ձայնը կարելի էր հանգիստ լսել, բայց երբ քեզ են հարվածում... Խարազանի ձայնն ուրիշ էր: Տղաներն ասում էին՝ դա պատրաստված է կետի ոսկորից ու կաշվից: Պատկերացրեց, թե ինչքան անտանելի կլիներ ցավը: Ձայները տարբեր էին, նայած թե ինչով էին հարվածում, երկար ու բարակ գավազանը զիլ սուլոց է հանում, և նա փորձեց պատկերացնել, թե դրա ցավն ինչպիսին է: Սահմռկեց: Վախեցավ նաև Էթիի ասածներից: Բայց ծիծաղելու ի՞նչ կար: Դողաց: Նույն դողոցը՝ բաղնիքում հանվելու պահին: Մտածեց՝ ո՞վ պիտի հանի շալվարը՝ ուսուցի՞չը, թե պատժվողը: Այ թե ծիծաղից կթուլանային, հա...

Նա նայեց Էթիի ծալված թեզանիքին, բարալիկ, թանաքոտ ձեռքերին: Թեզանիքը ճիշտ միստր Գիլսոնի պես էր ծալել, միայն թե ուսուցչինը ճերմակ էր ու մաքուր: Էթին նաև փափլիկ ձեռքեր և սուր-սուր եղունգներ ուներ: Երևի նա էլ լեդի Բոյլի պես փայլեցնում և հղկում էր իր երկար եղունգները: Դրանք շատ էին ցավեցնում, թեև նրա փափլիկ, ճերմակ ձեռքերը այնքան քնքույշ էին: Ճիշտ է, նա դողում էր ցրտից և երկյուղից՝ պատկերացնելով երկար, սուր եղունգները, զիլ սուլող խարազանը, սառչող այն տեղը, ուր վերնաշապիկն է վերջանում շալվարդ իջեցնելուց հետո, բայց, այնուամենայնիվ, անսովոր մի հանդարտություն էր պարուրում նրան՝ հիշելով ճերմակ, փափլիկ և ուժեղ ձեռքերը: Հիշեց Սեսիլ Ռանդըրին: Նա ասում էր՝ Միստր Գիլսոնը Քորիգանին ուժեղ չի դաղի: Իսկ Ֆլեմինգն ասաց՝ ընդհանրապես չի պատժի: Վատություն չի անի: Ինչո՞ւ:

Խաղահրապարակի հեռու ծայրից մեկը ձայն տվեց.

— Բոլորդ ներս գնացեք...

Մյուս ձայներր միախառնվեցին:

— Բոլորդ, բոլորդ ներս գնացեք...

Նա գրավորի ժամին նստել էր ձեռքերը ծալած, լսելով գրիչների կամացուկ խզխզոցը: Միստր Հարֆորդը ճեմում էր դասարանում՝ երբեմն կարմիր մատիտով նշումներ անելով, կամ որևէ աշակերտի մոտ նստելով, ցույց էր տալիս՝ ինչպես պիտի գրիչը բռնել: Սթիվենը փորձում էր ինքնուրույն հեգել վերնագիրը՝ «Անխոհեմ նախանձը նման է անղեկ նավի»:

... Հետո հայր Արնոլը ներս մտավ, լատիներենի դասն սկսվեց, իսկ նա նորից նստած մնաց նույն դիրքով՝ ձեռքերը ծալած: Հայր Արնոլը բաժանեց տետրերը, հայտարարեց՝ խայտառակել-թողել եք, հետո պատվիրեց նորից գրել՝ տառասխալները ուղղելով: Բայց ամենավատը Ֆլեմինգի գրավորն էր: Էջերը բոլորովին կարմրել էին ուղղումներից: Հայր Արնոլը տետրի անկյունից բռնեց, բարձրացրեց և հայտարարեց՝ այս ստուգողական աշխատանքը վիրավորանք է յուրաքանչյուր ուսուցչի հանդեպ: Հետո նա Ջեկ Լոութընին հարցրեց ծով բառի հոլովումը: Լոութընը եզակի բացառականին հասնելով, կանգ առավ և այլևս չըկարողացավ հոգնակին շարունակել:

— Ամոթ քեզ,— բարկացավ հայր Արնոլը:— Չէ՞ որ դու դասարանի լավագույն աշակերտն ես:

Հետո նա հարցրեց մյուսներին: Ոչ մեկը չգիտեր: Հայր Արնոլի հուզմունքն անցավ: Նա ավելի էր հանդարտվում, երբ տղաները փորձում և չէին կարողանում պատասխանել: Ուսուցչի դեմքը այլայլված չէր, բայց սևացել էր, իսկ աչքերը՝ պլշել: Նա հարցրեց Ֆլեմինգին; սա էլ պատասխանեց, որ ծով բառը հոգնակի չունի: Հայր Արնոլը բարկացած փակեց գիրքն ու գոռաց նրա վրա:

— Հենց հիմա ծունկի եկ... Դու ինձ երբևէ հանդիպած ամենադմբո աշակերտն ես: Իսկ մյուսներդ արտագրեք ձեր ստուգողական աշխատանքը:

Ֆլեմինգը դժկամորեն տեղից ելավ, ծնկի եկավ վերջին երկու նստարանների արանքում: Մյուսները գլխահակ սկսեցին արտագրել: Դասարանում լռություն տիրեց, և Սթիվենը երկչոտ նայելով հայր Արնոլի մռայլ դեմքին, նկատեց, որ այն փոքր-ինչ շառագունել էր բարկությունից:

Դուռը կամացուկ բացվեց, հետո փակ-

վեց: Դասարանով մեկ շշնջացին. տեսո՞ւչը… Մի պահ մեռյալ լռություն տիրեց, հետո վերջին նստարանների մոտից խարազանի ուժգին շառաչ լսվեց: Սթիվենի սիրտը վախից կուչ եկավ:

— Հայր Արնոլ, ո՞ւմ պիտի խարազանենք: Այս դասարանում կա՞ն ծույլ ու թոկից փախած երեխաներ, որոնց պիտի պատժել,— բարձրաձայն ասաց տեսուչը:

Նա առաջացավ դասարանի միջով, նկատեց ծնկի եկած Ֆլեմինգին:

— Օհո՜… բացականչեց նա:— Ո՞վ է այս տղան: Ինչո՞ւ է ծունկ չոքել: Ի՞նչ է անունդ, տղա:

— Ֆլեմինգ, սըր:

— Օհո՜… Ֆլեմինգ: Անշուշտ ծույլի մեկն ես: Աչքերիցդ էլ է երևում: Հայր Արնոլ, ինչո՞ւ է ծունկ չոքել այս տղան:

— Նա լատիներենի ստուգողական աշխատանքը վատ էր գրել,— ասաց հայր Արնոլը:— Բացի այդ, քերականության բոլոր հարցերին սխալ պատասխանեց:

— Իհարկե՜,— գոռաց տեսուչը,— իհարկե՜… Բնածին ապուշ է: Ես նրա աչքի անկյունում եմ դա տեսնում:

Տեսուչը խարազանով շրխկացրեց նըստարանին, բղավեց.

— Վեր կաց, Ֆլեմինգ, վեր կաց, տըղաս:

Ֆլեմինգը դանդաղ ոտքի ելավ:

— Ձեռքե՛րդ,— բղավեց տեսուչը:

Ֆլեմինգը պարզեց ձեռքը: Խարազանը շառաչելով իջավ. մեկ, երկու, երեք, չորս, հինգ, վեց:

— Մյուս ձեռքդ…

Խարազանը դարձյալ շառաչեց:

— Ծնկի,— գոռաց տեսուչը:

Ֆլեմինգը, ձեռքերը անութներին, դեմքը ցավից ծամածռելով ծնկի իջավ: Սթիվենը լավ գիտեր, թե ինչքան չոր էին նրա ձեռքերը. Ֆլեմինգը միշտ խեժ էր քսում: Իսկ ցավն անտանելի էր: Սոսկալի էր լսել խարազանի շառաչը: Սթիվենի սիրտը վախից նվաղեց:

—Իսկ դուք ձեր գրավորն արեք,—բղավեց տեսուչը:— Մեզ բոլորովին պետք չեն ծույլ ու անկարգապահ փոքրիկ սրիկաներ: Ասացի՝ ձեր գործին կացեք: Հայր Դոլանը ամեն օր կգա, կստուգի: Հայր Դոլանը վաղն էլ է գալու:

Նա խարազանի ծայրով մշտեց տղաներից մեկին՝ ասելով.

— Է, տղա… հայր Դոլանը մյուս անգամ ե՞րբ է գալու…


Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

— Վաղը, սըր,— լսվեց Թոմ Ֆըրլոնգի վախվորած ձայնը:

— Վաղը, մյուս օրը, այն մյուս օրը…— Ականջներիդ օղ արեք: Ամեն օր՝ Հայր Դոլան: Իսկ հիմա գրեք: Էյ, տղա, անունըդ ի՞նչ է:

Սթիվենի սիրտը ոնց որ պոկվեր-ընկներ:

— Դեդալուս, սըր:

— Ինչո՞ւ դու էլ մյուսների պես չես գրում:

— Ես… իմ…

Նա վախից չկարողացավ շարունակել:

— Ինչո՞ւ այս տղան չի գրում, Հայր Արնոլ:

— Նա կոտրել է իր ակնոցը,— պատասխանեց Հայր Արնոլը:— Ես նրան թույլ եմ տվել, որ չգրի:

— Կոտրել է ակնո՞ցը… Դա ի՞նչ է նշանակում: Անունդ, տղա՛:

— Դեդալուս, սըր:

— Դուրս արի տեղիցդ, Դեդալուս: Ծույլ, փոքրիկ սրիկա: Դեմքիցդ էլ երևում է, որ խորամանկի մեկն ես: Իսկ որտեղ ես կոտրել ակնոցդ, հը՞:

Սթիվենը, երկյուղած, չիմացավ ինչպես հասավ դասարանի կենտրոնը:

— Որտե՞ղ ես կոտրել ակնոցդ,— կրկնեց տեսուչը:

— Վազքուղյակում, սըր:

— Օհո… վազքուղյակում,— բացականչեց տեսուչը:— Ես լավ գիտեմ ձեր այդ ձեռնածությունները: Ծույլ, փոքրիկ խորամանկ… Ակնոցս կոտրել եմ: Դըպրոցական հին խորամանկություն: Ձեռքդ, շուտ…

Սթիվենը փակեց աչքերը, պարզեց դողացող ձեռքի ափը: Նա զգաց, թե ինչպես տեսուչի մատները քսվելով իր մատներին, բացեցին ցավից կծկված ափը, զգաց նրա ավսե թեզանիքի շրշյունը՝ խարազանը բարձրացնելիս: Վառող, խայթող, կոտրվող փայտի ճարճատյունի պես ձայն լսվեց, և նրա ձեռքի ափը խորշոմեց կրակն ընկած թղթի նման: Եվ այդ սոսկալի շառաչից, ցավից նրա աչքերից արտասուքներ հոսեցին: Ամբողջ մարմնով դողում էր ու ցնցվում երկյուղից, իսկ վառվող բազուկը դողդողում էր ինչպես տերևը քամուց: Արտասուքը, նաև փրկության աղոթքը հեղվեցին շուրթերին: Ծիգ արեց զսպելու արցունքներն ու կոկորդում կուտակվող փղձկոցը:

— Մյուս ձեռքդ,— գոռաց տեսուչը:

Սթիվենը հեռացրեց խեղված ու դողդոջուն աջ ձեռքը և պարզեց ձախը: Ավսե թեզանիքը դարձյալ շրշաց խարազանը բարձրանալիս, և շառաչող, խենթացնող, վառող, խայթող ցավից մարմինն ու ձեռքի ափը դարձան գունդուկծիկ, կապտուկներով ծածկված զանգված: Ամոթի, անարգանքի, ցասման ու երկյուղի արցունքները կաթիլ-կաթիլ ընկան շուրթերին: Նա սարսափով ետ քաշեց ձեռքն ու հեկեկաց: Մարմինը ցնցվում էր հաշմող երկյուղից, ամոթից ու կատաղությունից: Կոկորդում զգաց հորդացող հեկեկանքը, շառագունած այտերին՝ այրող արցունքներ:

— Ծնկի,— գոռաց տեսուչը:

Սթիվենն իսկույն ծնկի եկավ՝ դաղված ձեռքերը կողերին սեղմելով: Խարազանից ուռած ձեռքերի մասին մտածելիս այնպիսի խղճահարություն զգաց, կարծես դրանք ուրիշինը լինեին: Իսկ երբ նստեց, կուլ տալով վերջին հեկեկանքները, կողերին զգալով այրող ցավը, աչքին երևացին իր պարզած ձեռքերը, տեսուչի չոր մատների քսվելն իր դողդողացող մատներին, ճմրթված, կարմրած ափերը, դարձյալ դողդողացող մատները…

— Բոլորդ ձեր գործին անցեք,— գոռաց տեսուչը, հասնելով դռանը:— Հայր Դոլանը ամեն օր կգա և կստուգի՝ արդյոք որևէ ծույլ, թոկից փախած տղա չի՞ խորամանկում: Ամեն օր: Ամեն օր:

Դուռը փակվեց նրա ետևից:

— Դուք կարող եք նստել ձեր տեղերը:

Ֆլեմինգն ու Սթիվենը ոտքի ելան, մոտեցան իրենց նստարաններին, նստեցին: Ամոթից կարմրած Սթիվենը դաղված ձեռքով արագ բացեց գիրքն ու գըլուխը խոնարհեց էջին:

Սոսկված դասարանը շարունակեց արտագրել: Հայր Արնոլը տեղից ելավ, մոտեցավ տղաներին, մեղմորեն ու պատրաստակամ սկսեց օգնել նրանց՝ ցույց տալով սխալները:

Նրա ձայնը շատ բարի էր ու հանդարտ:

Նստածներից մեկն ասաց.

— Սենատն ու հռոմեացիները հայտարարեցին՝ Դեդալուսը անարդար է պատժված…

**Անգլերենից թարգմանեց**
**ՎԱՆԻԿ ԱՎԵՏԻՍՅԱՆԸ**



ԱՇՈՏ ՊՈՂՈՍՅԱՆ, 13 տ.
Լենինական

ԱՐԱՄ ՆԵՐՍԻՍՅԱՆ, 14 տ.
Լենինական

# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

●●●

Իմ մայրիկի
մազն է ճերմակ,
Դեմքը՝ բարի,
Ժպիտը՝ տաք:

Հայացքը՝ ջինջ,
Գութը՝ առատ,
Ձայնը՝ իմ մեջ
Հնչող զանգակ:

●●●

Խոր աշուն է արդեն,
Փչում է սառը քամին,
Մռայլ ամպ է կախվել
Հանդ ու ճանապարհին:

Վերջին տերևը տխուր
Երգեց մի հին երգ,
Այդ երգն արդեն ձրգել են
Քույրերը երեկ:

**ԲԵՆԻԱՄԻՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
Երևան, Մ. Նալբանդյանի անվան դպրոց,
4-րդ դասարան

ՎՈԼՖԳԱՆԳ ԲՈՐԽԵՐԹ
(1921—1947)
(գերմանացի բանաստեղծ, արձակագիր)

# Առնետները, այո, գիշերները քնում են

Փլատակ տան կանգուն մնացած միակ պատի դատարկ պատուհանը՝ վաղ երեկոյի արևով լի, հորանջում էր կապտակարմրով: Փոշու ամպը շողշողում էր ծխնելույզների վերձիգ փլատակների արանքում: Թափոնների անապատը նիրհում էր:

Տղայի աչքերը փակ էին: Միանգամից ավելի մթնեց: Նա զգաց, որ մեկն եկավ ու մութ, անձայն կանգնեց իր դիմաց: «Այ, նոր ինձ բռնացրին»— մտածեց տղան: Բայց երբ ծիկրակեց, միայն փոքր-ինչ մաշված շալվարի երկու փողք տեսավ: Նրա դիմաց այնպես ծուռ էին կանգնել դրանք, որ կարող էր արանքից նայել: Նա փորձ արեց մի փոքր էլ վեր նայել ու տարիքով մի մարդ տեսավ: Նրա ձեռքին զամբյուղ էր ու դանակ: Մատներն էլ փոքր-ինչ հողոտ էին:

— Քնա՞ծ ես, հա՞,— հարցրեց տղամարդն ու նայեց տղայի խռիվ մազերն ի վար:

Յուրգենը, տղամարդու ոտքերի արանքից ծիկրակելով, նայեց արևին ու ասաց.

— Չէ, քնած չեմ: Պետք է հսկեմ այստեղ:

— Երևի դրա՞ համար է քո էդ մեծ ձողը, հա՞,— գլխով ցույց տվեց տղամարդը:

— Հա,— կտրիճավարի պատասխանեց Յուրգենն ու ամուր սեղմեց ձողը:

— Էդ ի՞նչն ես հսկում:

— Չեմ կարող ասել:— Նա զույգ ձեռքերով ամուր սեղմեց ձողը:

— Երևի փող է, հա՞:— Մարդը վար դրեց զամբյուղն ու դանակը շալվարին քսելով սրբեց:

— Չէ: Փող որ չի: Ուրիշ բան է:

— Ըըմ: Բա ի՞նչ է:

— Չեմ կարող ասել: Ուրիշ բան է:

— Հա, ուրեմն, ես էլ քեզ չեմ ասի՝ ինչ կա իմ զամբյուղում:— Տղամարդը ոտքով խփեց զամբյուղին ու փակեց դանակը:

— Պահ, շատ էլ պետքս է, թե ինչ կա զամբյուղում,— արհամարհանքով ասաց տղան,— նապոյի կեր է:

— Գրողը տանի, ճիշտ է,— զարմացավ տղամարդը:— Աչքաբաց տղա ես երևում: Քանի՞ տարեկան ես:

— Ինը:

— Հա, մի տես, է: Ուրեմն՝ ինը: Որ այդպես է, գիտե՞ս, թե քանիս կանի երեք անգամ ինը, հը՞:

— Էդ հեչ,— ասաց Յուրգենը և ժամանակ շահելու համար ավելացրեց,— հասարակ բան է:— Նա նայեց մարդու ոտքերի արանքից:— Երեք անգամ ինը, չէ՞,— մի անգամ էլ հարցրեց նա,— քսանյոթ: Գիտեի դա:

— Ճիշտ է,— ասաց մարդը,— ճիշտ այդքան էլ ճագար ունեմ:

Յուրգենի բերանը կլորացավ. քսանյոթ:

— Կարող ես նրանց նայել: Մեծ մասը ձագեր են: Կուզե՞ս:

— Չեմ կարող: Ախր պետք է հսկեմ,— անվստահ ասաց Յուրգենը:

— Անընդհա՞տ,— հարցրեց մարդը,— գիշերնե՞րն էլ:

—Գիշերներն էլ: Անընդհատ: Միշտ:— Յուրգենը նայեց ծուռ ոտքերն ի վեր:— Արդեն շաբաթ օրվանից,— շշնջաց նա:

— Ու ոչ էլ տո՞ւն ես գնում: Չէ՞ որ պետք է սնվես:

Յուրգենը մի քար բարձրացրեց: Այնտեղ կես հաց էր դրված ու մետաղյա տուփ:

— Ծխո՞ւմ ես,— հարցրեց մարդը:— Կարո՞ղ է ծխամորճ ունենաս:

Յուրգենն ամուր սեղմեց ձողն ու երկչոտ ասաց.

— Փաթաթում եմ: Տանել չեմ կարող ծխամորճը:

— Ափսոս:— Մարդը կռացավ իր զամբյուղի վրա:— Կարող էիր մի անգամ հանգիստ ճագարներին նայել: Ամենից առաջ՝ ձագերին: Կարող է մեկին ջոկեիր քեզ համար, բայց այստեղից գնալ չես կարող:

— Ոչ,— ասաց Յուրգենը,— ոչ, ոչ:

Տղամարդը բարձրացրեց զամբյուղն ու ուղղվեց:

— Է, թե այստեղ ես մնալու, ափսոս,— ու շուռ եկավ:

— Եթե ինձ չես մատնի,— արագ վրա բերեց Յուրգենը:—Առնետներն են պատճառը, որ այստեղ ես:

Ծուռ ոտքերը մի քանի քայլ ետ եկան:— Առնետնե՞րը:

— Հա: Ախր դրանք մեռելներին են ուտում: Մարդկանց: Դրանք, ախր, նրանցով են սնվում:

— Ո՞վ է ասում:

— Մեր դասատուն:

— Եվ դու հիմա առնետների՞ն ես հսկում,— հարցրեց մարդը:

— Չէ: Դրանց չէ: Եղբորս: Նա այնտեղ՝ ներքևում է պառկած,— համարյա անասելի շշնջաց նա:— Այնտեղ:— Յուրգենը ձողով ցույց տվեց փլված պատերը: Մեր տան վրա ռումբ ընկավ: Նկուղում լույսը միանգամից հանգավ: Նա էլ... Մենք շարունակ ձայն էինք տալիս: Նա ինձնից շատ ավելի փոքր էր: Ընդամենը՝ չորս: Նա դեռ այստեղ պետք է լինի: Նա, ախր, շատ, շատ փոքր էր ինձանից:

Տղամարդը նայեց խռիվ մազերին:

— Լավ, բա ձեր դասատուն չի՞ ասել, որ առնետները գիշերները քնում են,— հանկարծ ասաց նա:

— Չէ,— շշնջաց Յուրգենն ու նրա հոգնածությունը միանգամից դեմքին գծագրվեց:— Չի ասել:

— Բա,— ասաց տղամարդը,— դասատու եմ ասել. հա, դա էլ չգիտի: Առնետները, ախր, գիշերները քնում են: Գիշերները հանգիստ կարող ես տուն գնալ: Դրանք գիշերները քնում են: Միշտ: Մութն ընկնելուց հետո:

Յուրգենը ձեռքի ձողով փոքր անցքեր էր անում փլատակների աղբի մեջ: «Սրանք, միայն բներ են, փոքր բներ»,— մտածեց նա:

— Գիտե՞ս ինչ,— ասաց մարդը. նրա ծուռ ոտքերը անհանգիստ էին,— հիմա նապաստակներիս կկերակրեմ, ու երբ մութն ընկնի, կգամ քո ետևից: Երևի կարողանամ մեկը բերել հետս: Մի փոքրիկի, ինչ ես կարծում, հը՞:

Յուրգենը փոքր փոսիկներ էր անում:

— Մենակ փոքր նապաստակներ. սպիտակ, գորշ, սպիտակագորշ:

— Չգիտեմ,— ասաց նա ու նայեց ծուռ ոտքերին:— Եթե դրանք իրոք քնում են գիշերները...

Տղամարդը կիսաքանդ պատի վրայով դուրս եկավ փողոց:

— Բա ոնց,— այնտեղից ասաց նա,— ձեր դասատուն պետք է թողնի էդ գործը, եթե այդքան բանն էլ չգիտի:

Յուրգենը վեր կացավ ու հարցրեց.

— Կարո՞ղ եմ մեկն ստանալ: Գոնե սպիտակը:

— Կփորձեմ,— արդեն հեռանալով ծոր տվեց տղամարդը:— Բայց դու այդքան ժամանակ պետք է սպասես այստեղ: Հետո ես տուն կգամ քեզ հետ: Եղա՞վ: Պետք է հորդ ասեմ, թե որտեղ սարքի նապաստակի բույնը: Որովհետև դուք պետք է իմանաք դա:

— Հա,— իր հերթին պատասխանեց Յուրգենը:— Կսպասեմ: Դեռ պետք է հսկեմ, մինչև մութն ընկնի: Հաստատ կսպասեմ: Մենք տանը տախտակներ էլ ունենք,— ավելացրեց նա,— արկղի տախտակներ:

Տղամարդն էլ չէր լսում: Նա իր ծուռ ոտքերով գնում էր երեկոյան կարմրած արևի կողմն, ու Յուրգենը կարող էր տեսնել, թե ինչպես էր արևը փայլում նրա ոտքերի արանքից, այնքան որ ծուռ էին դրանք: Զամբյուղն անընդհատ այսուայն կողմ էր թռչկոտում: Մեջը նապաստակի կեր էր: Նապաստակի կանաչ խոտ, որ փոքր-ինչ գորշ էր փլատակների աղբից:

**Գերմաներենից թարգմանեց**
**ՍԱՄՎԵԼ ՄԿՐՏՉՅԱՆԸ**



# ԶՐՈՒՅՑՆԵՐ ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ



ԶՐՈՒՅՑ ՔՍԱՆՎԵՑԵՐՈՐԴ

**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
բանասիրական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

## Տիգրան Մեծ

Արտաշես Առաջինից հետո շուրջ 60 տարի Հայաստանը խաղաղ էր: Արտաշեսն այնպես էր հզորացրել երկիրը, որ հարևան պետություններից որևէ մեկը չէր համարձակվում հարձակվել նրա վրա: Արտաշեսից հետո թագավորեց նրա ավագ որդի Արտավազդը, ապա մյուս որդին՝ Տիրանը: Այս ընթացքում, հավանական է, որ Հայքում իշխել է նաև Վաղարշակ թագավորը:

Այդ ժամանակաշրջանում էր, որ Միջին Ասիայում ուժեղացան պարթևները: Դրանք, ինչպես գիտենք, իրանցիներ էին: Պարսից Աքեմենյան թագավորական տան անկումից հետո իրանցիների մեջ, ամենաուժեղը դարձան պարթև տիրակալները: Նրանցից մեկը՝ Արշակ անունով, մ. թ. ա. 247 թվականին իրեն հայտարարեց թագավոր: Այդպես Միջին Ասիայում ստեղծվեց Պարթևական պետությունը, որը հետո մեծ դեր պիտի խաղար հայ ժողովրդի պատմության մեջ:

Այս պետությունը շատ արագ հզորացավ և սկսեց սպառնալ թե՛ Սելևկյան պետությանը, և թե՛ Հայքին: Պարթևների թագավոր Միհրդատ II-ը, որ գահ էր բարձրացել մ. թ. ա. 123 թ., Սելևկյաններից նվաճեց Պարսկաստանը, Բաբելոնը և ապա հարձակվեց Արտավազդի հայկական զորքերի վրա: Նրան հաջողվեց պատանդ վերցնել թագաժառանգ Տիգրանին և տանել Պարթևստան: Տիգրանը բավական ժամանակ ապրեց պարթևների արքունիքում, հմտացավ երկիր կառավարելու և պատերազմ վարելու արվեստներում:

Մ. թ. ա. 95 թ. Հայաստանը մնացել էր առանց թագավոր: Պարթևները Տիգրանին, որպես իրենց մարդու, ուղարկեցին Հայաստան: Եվ այդ նույն թվականին մոտ 45 տարեկան Տիգրանը հայոց գահ բարձրացավ: Պարթևները, իբրև Տիգրանի արձակման գին, հայերից վերցրել էին Մեծ Հայքի հարավային շրջաններից մի մեծ տարածք, որ կոչվում էր Յոթանասուն հովիտներ:

Դառնալով թագավոր՝ Տիգրան II-ը, անմիջապես սկսեց ինքնուրույն քաղաքականություն վարել: Նրա նպատակն էր նախ իր թագավորությանը միացնել Մեծ Հայքի այն ընդարձակ հատվածը, որն Արտաշեսը չէր կարողացել միացնել իր պետությանը: Դա Ծոփքն էր: Մ. թ. ա. 94 թ. հայկական զորքը մտավ Ծոփք և գրավեց այն: Այդպիսով, Մեծ Հայքը մոտեցավ ամբողջացման: Չմիացված մընացին մի քանի հողամասեր, որոնք Տիգրանը ծրագրում էր շուտով գրավել: Բայց պետք էր նախ ամրապնդել Ծոփքի միացումը: Մեծ Հայքի այս աշխարհը գտնվելով երկրի հարավ-արևմտյան մասում՝ սահմանակից էր Փոքր Հայքին և մոտ Կապադովկիային: Վերջինս հովանավորում էր Ծոփքի հայոց թագավորությանը և այն պահում էր Մեծ Հայքից դուրս: Պետք էր հարվածել Կապադովկիային: Մ. թ. ա. 93 թվականին Տիգրանի զորքը արշավեց դեպի Կապադովկիա և ջախջախեց այդ երկրի թագավոր Արիոբարզանի զորաբանակը: Ծոփքը կրկին Մեծ Հայքի մեջ էր:

Մեծ Հայքից դուրս մնացած մի քանի հողամասեր էլ, այդ թվում Յոթանասուն հովիտները, գտնվում էին պարթևների իշխանության տակ: Ուրեմն, Տիգրանի գլխավոր ախոյանը դարձավ Պարթևստանը, որն արդեն շատ էր հզորացել: Պարթևների դեմ պատերազմ սկսելուց առաջ Տիգրանը դաշինք կնքեց Պոնտոս կոչված պետության հետ: Պոնտոսի հողերը Սև ծովի հարավային ափերն էին և Ղրիմը: Այդ ժամանակ նրա թագավորն էր Միհրդատ Եվպատորը: Նա պարթև էր, հմուտ քաղաքականագետ, զորավար և գիտուն մարդ (գիտեր 40 լեզու): Տիգրանը Միհրդատ Եվպատորի հետ բարեկամության ու փոխադարձ օգնության

դաշինք կնքեց և այն ամրապնդեց՝ ամուսնանալով Միհրդատի դստեր հետ: Դրանից հետո հայոց զորքը մտավ Յոթանասուն հովիտներ երկիրը, գրավեց այն ու միացրեց Մեծ Հայքին:

Ապա Տիգրանն արշավեց դեպի արևելք: Նա ջախջախեց պարթևական զորքը, գրավեց Ատրպատականը (Մեծ Հայքից հարավ-արևելք), մտավ Մարաստան, հրդեհեց սրա մայրաքաղաք Եկբատանը: Պարթևների թագավոր Գոդերձը իրեն պարտված ճանաչեց և ընդունեց Հայքի գերիշխանությունը: Տիգրանը պարթևների թագավորին զրկեց արքայից արքա տիտղոսից և իրեն հայտարարեց արքայից արքա, այսինքն՝ թագավորների թագավոր:

Ապա Տիգրան Մեծի զորքերը արշավեցին դեպի հարավ և գրավեցին Կորդուքը, որը Մեծ Հայքի հարավային Կորճայք աշխարհի մի մասն էր: Այդպես Մեծ Հայքն ամբողջացավ: Արարատյան հայոց թագավորների ջանքերով դեռևս վեց-յոթ հարյուր տարի առաջ միավորված Մեծ Հայքը, կրկին միացյալ դարձավ՝ այն էլ մի նոր ու հզոր թագավորության մեջ:

Բայց Տիգրանի ծրագրերն ավելի մեծ էին: Նա նախ արշավեց Մեծ Հայքից հարավ, դեպի Միջագետք և գրավեց Ադիաբենե երկիրը՝ Ասորեստանի Նինվե քաղաքով, հետո նվաճեց Մծբին հայտնի քաղաքը, գրավեց Օստրոյենե կոչվող երկիրը՝ Եդեսիա նշանավոր մայրաքաղաքով:

Պարթևներից հետո հաջորդ մեծ ուժը Հարավ-արևմտյան Ասիայում Սելևկյանների պետությունն էր: Տիգրանը պետք է բախվեր նրա հետ: Բայց պատերազմ չեղավ: Տեսնելով Տիգրանի հզորությունը, մեկը մյուսի հետևից նրա տարած փայլուն հաղթանակները՝ Սելևկյանները երկիրը հանձնեցին նրան: Տիգրանը Սելևկյանների մայրաքաղաք Անտիոքում մ. թ. ա. 83 թ. գահ բարձրացավ որպես արքայից արքա: Սելևկյանների պետությունը վերացավ՝ դառնալով հայոց պետության մի մասը: Իսկ Տիգրան Մեծի զորաբանակները շարունակելով իրենց արշավանքը, գրավեցին Փյունիկիան՝ Միջերկրական ծովի ափին, հրեաների երկրի մի մասը, ապա անցնելով հյուսիս, մտան Կիլիկիա: Միջերկրական ծովի ափերը՝ Կիլիկիայից մինչև Եգիպտոս հայոց իշխանության տակ էին: Հայերի ձեռքին էին նաև հին աշխարհի այնպիսի մեծ նավահանգիստներ, ինչպիսիք են՝ Տարսոնը, Լաոդիկեան, Սելևկիան, Տյուրոսը, Սիդոնը, Բերիթոսը (Բեյրութը) և այլն:

Տիգրանը գրավեց նաև Կոմագենե երկիրը (Ծոփքից հարավ): Միջագետքի և Պաղեստինի, ինչպես և սրանցից հարավ գտնվող մի քանի ժողովուրդներ, այդ թվում արաբական մի շարք ցեղեր, հնազանդություն հայտնեցին Տիգրան Մեծին: Նույնն արեցին Մեծ Հայքի սահմանից՝ Քուռ գետից, հյուսիս գտնվող



Տիգրան Մեծի Հայոց կայսրությունը մ. թ. ա. 1-ին դարում

երկրները՝ Աղվանքն ու Վիրքը:

Այդպես ստեղծվեց հայկական կայսրություն: Այդ հսկա ու բազմազգ պետության գրավոր պաշտոնական լեզուն հունարենն էր, իշխում էր հելլենիստական մշակույթը: Իսկ խոսակցական գրլխավոր լեզուն հայերենն էր, որը ավելի ու ավելի էր տարածվում շրջակա երկրներում՝ Տիգրան Մեծի հովանավորությամբ: Նույնիսկ իր օտարազգի գերիներին, Տիգրանը պարտադրում էր սովորել ու խոսել հայերեն: Օրինակ, իր գերած հրեաներին, որոնց նա բնակեցրել էր Վանի մոտակայքում, Տիգրանը պարտավորեցրեց սովորել ու խոսել հայերեն և սպառնաց, որ չենթարկվողների լեզուն կտրել կտա:

Անհրաժեշտ էր նաև նոր մայրաքաղաք կառուցել, որը լիներ նոր կայսրության կենտրոնական մի վայրում (Արտաշատն այլևս կենտրոն չէր): Մեծ Հայքի հարավային Աղձնիք աշխարհում Տիգրանն ընտրեց մի այդպիսի տեղ, որն, իրոք, իր պետության մոտավոր կենտրոնն էր: Նա այդտեղ կառուցեց իր անունով կոչվող նոր մայրաքաղաք՝ Տիգրանակերտը: Այն դարձավ մեծ ու շքեղ քաղաք՝ 25 մետրանոց հսկա պարիսպներով, հոյակերտ պալատներով: Ապա Տիգրանակերտ անունով մի քանի այլ քաղաքներ էլ կառուցվեցին Հայաստանում: Տիգրանն իր կայսրությունը մասերի բաժանեց: Անտիոքում՝ կառավարիչ կարգեց իր զորավար Բագարատին, իսկ Մծբինում՝ իր եղբայր Գուրասին: Երկրի առևտուրը զարգացնելու համար Տիգրանը Միջագետքի առևտրական ճանապարհները մարդաբնակ դարձրեց: Այդ ճանապարհների շրջակայքում նա բնակեցրեց իրեն դաշնակից արաբական մի քանի քոչվոր ցեղեր՝ նրանց արտոնություններ տալով: Դա ապահովեց ճանապարհների անվըտանգությունը և նպաստեց առևտրի ծաղկմանը: Տիգրան Մեծը նաև արտոնություններ տվեց իր պետության բոլոր քաղաքներին: Եվ դրանք բարգավաճում էին:

Տիգրանյան Հայաստանի դեմ հանդիման կանգնած էր Հռոմեական կայսրությունը: Արևելքում Հռոմը մնաց միակ ուժը, որից Տիգրանը պետք է զգուշանար:

Հռոմի նվաճած երկրներին ավելի [illegible] էր Պոնտոսի թագավորությունը: [illegible] Հռոմն Արևելքը նվաճելու ծրագիր ուներ, և սկսվեցին պոնտա-հռոմեական պատերազմները: Պոնտոսի թագավոր Միհրդատ Եվպատորը սկզբից հաջողություն ունեցավ, նա հռոմեական լեգեոնները դուրս վռնդեց Փոքր Ասիայից: Բայց հետո հռոմեացիները սկսեցին հաղթանակներ տանել: Նրանց զորավար Լուկուլլոսը ի վերջո մ. թ. ա. 71 թ. ջախջախեց Միհրդատի զորքերը, գրավեց Պոնտոսի թագավորությունը: Միհրդատը փախավ իր փեսայի՝ Տիգրանի մոտ: Լուկուլլոսի դեսպանը պահանջեց Միհրդատին: Տիգրանը մերժեց:

Հայկական զորքերը կռվում էին Եգիպտոսի մոտ: Տիգրանը մտադրվել էր գրավել ամբողջ Եգիպտոսը: Բայց այդ ժամանակ նա լուր ստացավ, որ Լուկուլլոսի հռոմեական զորաբանակը մտել է Հայք:

Հռոմեացիների դեմ նախ դուրս եկավ Տիգրանի Մեհրուժան զորավարը: Բայց պարտվեց: Հռոմեացիները պաշարեցին Տիգրանակերտը: Տիգրանի և Լուկուլլոսի բանակները հանդիպեցին Նիկեփորիոն գետի ափերին: Մ. թ. ա. 69 թվականի հոկտեմբերի 6-ին, տեղի ունեցած ճակատամարտում հայկական բանակը պարտվեց: Իսկ Տիգրանակերտի հայկական կայազորի հույն զորամասը, քաղաքի դարպասները բացելով, ներս թողեց հռոմեական զորքին: Հռոմեացիները կողոպտեցին ու քարուքանդ արեցին հոյակերտ քաղաքը:

Լուկուլլոսը շարունակեց արշավանքը դեպի Արտաշատ: Հայերը որոշեցին անցնել վաղեմի իրենց ռազմավարությանը, որը դեռևս կիրառում էր Արամ թագավորը մ. թ. ա. 9-րդ դարում՝ հակառակորդին ճակատամարտ տալ լեռներում: Եվ Հայաստանի լեռներում փոքր ճակատամարտերով Տիգրանի զորքերը մաշեցին Լուկուլլոսի բանակները: Իսկ վճռական ճակատամարտը տեղի ունեցավ Արածանի գետի ափին: Հռոմեական բանակը գլխովին ջախջախվեց: Լուկուլլոսը նահանջեց: Հռոմեացիները դուրս փախան Մեծ Հայքի սահմաններից:

Միհրդատ Եվպատորը, հայկական մի բանակ առած, հռոմեացիներից ետ նըվաճեց Պոնտոսը: Հռոմի ծերակույտը (խորհրդարանը), տեսնելով Լուկուլլոսի անհաջողությունները, Արևելք ուղարկեց մի այլ զորավարի՝ Պոմպեոսին, որպես գլխավոր հրամանատարի:

## ԴԱՍԱԿԱՆՆԵՐԻ ԷՋ



# Լևոն Շանթ

1869—1951



Իջե՛ք, իջե՛ք,
երազներ,
իջե՛ք զգո՛ւյշ,
երազներ,
շոյո՛ղ, անո՛ւշ,
երազներ,
իջե՛ք, քնքո՛ւշ
երազներ,
ծաղիկ, կանաչ,
թարմ հյուսեր,
բախտի կարկաչ
ու հույսեր.
դող ու անցուկ
ու կարոտ,
ծածուկ արցունք
վարանոտ.
խելքի, մտքի
հակասում,
միշտ նո՛ր կյանքի
սպասում...
իջե՛ք, իջե՛ք,
երազներ,
իջե՛ք, զգո՛ւյշ,
երազներ,
շոյող, անո՛ւշ
երազներ,
իջե՛ք, քնքո՛ւշ
երազներ:
Գգվանք, ժպիտ,
գույն ու բույր,
աչքեր վճիտ
ու համբույր.
իղձեր անվերջ,
անմեկին,
տագնապ ու տենչ
մոլեգին.
օրոր, գրգիռ
ու հույզեր,
սրտի թրթիռ,
երգ ու սեր...
Իջե՛ք, իջե՛ք,
երազնե՛ր,
իջե՛ք զգո՛ւյշ,
երազներ,
շոյող, անո՛ւշ
երազներ,
իջեք, քնքո՛ւշ
երազներ:
Աստղեր թռիչ,
բոց ու կայծ,
ցնորքներ վառ
ու առկայծ.
հավատ ուժի,
մեծության,
փառքի, կամքի
գոյության.
շռինդ, թնդյուն,
հպարտանք,
իմաստություն...
բյո՛ւր պատրանք:
Իջե՛ք, իջե՛ք,
երազներ,
իջե՛ք, զգո՛ւյշ,
երազներ,
շոյող, անո՛ւշ
երազներ,
իջե՛ք, քնքո՛ւշ
երազներ:

«Հին աստվածներ»
դրամայից



Վիլյամ Սարոյանն այս խոսքը գրել է քսանհինգ տարի առաջ, փորձելով գուշակել երկրագնդի այսօրվա ճակատագիրը: Մեծ գրողի ենթադրությունները որքանո՞վ են համապատասխանում մեր օրերին, և նրա առաջադրած հարցերին, ի՞նչ պատասխան կարող ենք տալ այսօր: Գուցե ինքնե՞րդ էլ փորձեք, ձեր ուժերի ներածին չափ, պատկերացնել երկրագնդի վիճակը քսանհինգ տարի անց: Չէ՞ որ դա նախ և առաջ ձե՛ր ապագան է...



ՎԻԼՅԱՄ ՍԱՐՈՅԱՆ

## Հայացք անցյալից

Ինչո՞ւ աշխարհը չի վերափոխվում դեպի լավը: Ինչո՞ւ մարդկային կյանքի մեջ այդքան խորն են ներթափանցել բռնությունը, նյարդային վիճակը և նողկալի սարսափը: Ինչո՞ւ անկեղծ ուրախությունն այդքան հազվադեպ է ու վաղանցիկ: Կարճ ասեմ. աշխարհը չի փոխվում դեպի լավը, որովհետև այն ստեղծված է մարդու կողմից, իսկ մարդը պետք է կատարելագործվի ևս երկու միլիոն տարի: Այնինչ, նա այնքան հանելուկներ է առաջադրել, որ դրանք ո՛չ հանգիստ են տալիս նրան, ո՛չ ժամանակ: Իսկ այդ հանելուկների առանձնահատկությունն այն է, որ քսանհինգ տարի հետո դրանք կդառնան առավել խճճված: Օրինակ, նա, ով առայժմ դեռ ռումբ չի գցել, ԿԱՐՈՂ է ուզածդ ժամանակ անել այդ: Ի՞նչ օգուտ՝ գլուխ կոտրել այդ առեղծվածի վրա: Մարդը ստիպված կլինի մահացու թռիչք կատարել այս կամ այն կերպ, կամ պառկել մեջքի վրա ու սպասել:

Եթե ես ապրեմ մինչև 1987 թվականը, կլինեմ 77 տարեկան: Լավ կլիներ ապրեի, որովհետև ես միշտ անհամբեր եմ՝ իմանալու, թե կյանքն օրեցօր ինչ է պատրաստում ինձ համար: Ես բնավ դեմ չեմ գիտության հետագա մեծ հայտնագործություններին, բայց ինձ առաջվա պես ավելի շատ հետաքրքրելու է մարդն ինքնին և նրա հոգեկան աշխարհը բացահայտող արվեստը: Չեմ հավատում, որ քսանհինգ տարի անց թեկուզ ինչ-որ բան դեպի լավն է փոխվելու մարդու համար: Չէ՞ որ մարդկանց մեջ, սա պետք է լավ հիշել, ոչինչ չի փոխվում, բացի ստից: Ոչ պիտանի լինելու պատճառով մենք դեն գցեցինք հին ստերի մի մասը և գաղտագողի կուտակեցինք նորերը: Մենք ոչինչ ենք, բայց մեր մեջ ամեն ինչն ուղղված է մի նպատակի, որ այդ «ոչինչը» մեզ գերի ու անհանգստություն պատճառի: Ժամանակը մեր տնօրինության տակ է, բայց մեր կյանքն անցնում է ակնթարթի պես: Քսանհինգ տարի հետո Նյու Յորքը կմընա նույն Նյու Յորքը: Իսկ ինչպիսի՞ն կլինեն նրա բնակիչները: Ինչպիսի՞ն կըլինի նրանցից յուրաքանչյուրը:

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ

## Այգաբաց

Սեգ կատարներին լույս է կաթում,
Լուռ անհետանում մի պաղ լուսին,
Դաղձի բուրմունք կա մաքուր օդում,
Եվ բացված մասրի՝ ժայռի ուսին:
Վերջին աստղերն են հազիվ ծորում,
Ոսկե ցոլքերը՝ դառնում սահման,
Ծույլ են իրար խորունկ ձորում
Լույսն ու խավարը եղբոր նման:
Դանդաղ է ելնում արևն արթուն,
Թափում անհունից գանձ ու գոհար,
Արտույտն այնպես է երգում արտում,
Կարծես թե լինի սրնգահար:
Բայց ծերուկ լեռը մեր Չաթինդաղ
Գլխին ձյուն ունի, վրան՝ ստվեր,
Իսկ մութ ձորերում ցողը դանդաղ
Նորեկ լույսի հետ ելնում է վեր:
Ոչ մի ամպ չկա անհունի մեջ,
Խոնավ հանդերն էլ չունեն ծարավ,
Տաք մշուշները քողերն իրենց
Գիշերը տարել են դեպի հարավ:
Լուռ տաքանում է օրը փափուկ,
Դառնում վեհաշուք ու փառահեղ,
Ստվեր է փնտրում մի շեկ հոբթուկ,
Որ կանաչ հովտում նստի մի տեղ:
Բլուրները չինջ ու հեռանիստ
Դեռ վաղուց են օծվել լույսի մեջ ծով,
Ծեր այգեպանն է երգում հանգիստ,
Հիանում անամպ լուսաբացով:



ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ

# Քնած և արթուն տայգան

Նկարը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ



Զյան նուրբ շղարշը օրորվում, ճոճվում էր տայգայի վրա: Այնքան մեղմ ու հանդարտ էր իջնում ձյունը, որ թվում էր՝ երազ էինք տեսնում, այնպես տաք էր դրսում, որ բրդյա երեսկալներս իջեցրեցինք կրծքներիս: Այդպիսի դեպքերում սովորաբար ժպտում ես, եթե կողքիդ մարդ է լինում: Կողքիս էր չուկչի որսորդը, և ես ժպտացի: Իսկ այնտեղ՝ Ներա գետի վրա, ասես բամբակի քուլաների մեջ փաթաթված, գնդակի նման դեպի մեզ էր գալիս գորշավուն մի ամպ:

— Բուք է գալիս,— ասաց չուկչին:— Երևի Օյմյակոն է գնում: Եթե գնաց Արտիկի կողմը՝ մենք ձյունը կփորենք, մեջը կմտնենք,— ասաց ու մոտեցավ ծառերից մեկին:— Եթե ծառը հիմա գլուխը թեքի արևմուտք՝ բուքը կգա մեզ վրա, եթե արևելք՝ կգնա Խոնուու:

Չուկչին նկատեց, որ բլրակի վրա կանգնած է ճերմակ կաքավների մի մեծ ընտանիք և նայում է գալարվող ամպին:

— Բուքը գնում է Խոնուու,— ասաց,— կաքավը հանգիստ է:

Բուքը գնաց Խոնուու, և մենք քայլեցինք դեպի Սուսուման:

Այս քամիները նման չեն սովորական, մշտական քամիներին և ոչ էլ պտտահողմերին: Ուժեղ, սրընթաց քամիներ են, օդ չեն բարձրանում, գետնասող են, ինքնամփոփ, մեծ տարածում չունեն. կարծես քամին փաթաթել են մի հաստ թաղիքի մեջ, և այդ փաթեթն անասելի արագությամբ գնում է դեպի ծով, իր հետ տանելով այն ամենը, ինչ պատահել է իր ճանապարհին՝ մարդ, գազան և ամեն տեսակ իրեր: Մի անգամ եմ միայն մոտիկից տեսել այդ քամին: Այն գալիս էր օձագալար, բայց չէր տարածվում, նրան ուղեկցում էր կապտին տվող մի սառը հոսանք և ուղղաձիգ մի պոչ, որ կարծես հավաքում էր բքի փեշերը: Շատ նման էր գիշեր ժամանակ թնդանոթից դուրս թռած արկին՝ կենտրոնացած, հըզոր և չարագուշակ բվվոցով: Նրա շուրջ, մոտ հարյուր մետր տարածության վրա, օդն անշարժ էր ու խաղաղ: Ես զգում էի նրա արագությունը, ծանրությունը, և ինձ թվում էր, թե իրական բան

չէ տեսածս, պատրանք է և ուրիշ ոչինչ: Չուկչի որսորդը (նրանք բոլորն էլ առհասարակ որսորդներ են), որն, իհարկե, առաջին անգամ չէ, որ տեսնում էր այդ «հրաշքը», աշխատում էր ավելի շատ նայել իմ դեմքին, տեսնել, թե ես ինչպես եմ հուզվում, գուցե նաև՝ սարսափում տեսածիցս: Նա երբեմն իր հըրճվանքն արտահայտում էր բարձր ծիծաղով, փորը բռնած կռանում էր մինչև գետին և ջանում էր ավելի զարմացնել ինձ, զարմանքս հասցնել վախի, ուզում էր տեսնել խենթության հասած մայրցամաքի բնակչին, որը նայում է մի բանի և ոչինչ չի հասկանում:

— Չմոտենաս, հեռու կաց, քեզ կըտանի,— զգուշացնում էր երբեմն, թևիցս բռնում, կարծես ինձ ետ պահելու համար: Եվ չբավարարվելով, փորձում էր վախեցնել ինձ:— Մի անգամ, երբ այսպես կանգնած նայում էի բքահողմին, հանկարծ տեսա, որ մի անագին արջ է բռնել ու պտտելով տանում է,— այս խոսքի վրա չուկչին լայն բացեց աչքերը, փորձեց երևի լավ տեսնել, թե ինչ սարսափ եմ ապրում ես:— Հրացանս ուսիցս հանեցի,— շարունակեց նա,— փողն ուղղեցի դեպի արջը և ձգանը քաշեցի: Արջը, որ արդեն նկատել էր ինձ, երևի հույս ուներ, որ ես իրեն կօգնեմ, բայց երբ տեսավ իրեն ուղղված հրացանս, գուցե հասկացավ, որ ես օգնելու փոխարեն սպանել եմ ուզում իրեն, կարծես քմծիծաղ տվեց, իսկ երբ բուքը գընդակիս ուղղությունը շեղեց, մատ թափ տվեց վրաս և հասկացրեց. «Շատ լավ, դու էս բանը չմոռանաս, մի օր քթիցդ կբերեմ»:

— Սարսափելի է, չէ՞,— հանկարծ հարցրեց չուկչին:

— Չէ, ուղղակի, զարմանալի է, թե ինչու հողմը ձեզ չբռնեց, իր հետ չտարավ ծով:

Նա իմ հարցին չպատասխանեց:

— Մեզ մոտ,— հետո արդեն լուրջ ասաց նա,— երբեմն շամանն են անվանում այս քամուն, որովհետև այն ծընվում է Օյմյակոնի երկնքում, ամպերի մեջ, և խիստ ուժեղ է ու դաժան: Պատահում է, որ այդպիսի շամաններ լինում են նաև ամռան օրերին, գետերի վրա, անցնում են ջրի վրայով և ահագին ալիքներ բարձրացնում: Այդ քամին տեսնող մարդուն կթվա, թե ջրի տակով մի հսկա դև է անցնում և նա է բարձրացնում ջուրը՝ ձկներին էլ հետը:

— Դու եղե՞լ ես Օյմյակոնում:

— Այո,— ասաց նա,— աշխարհի ամենացուրտ տեղն է Օյմյակոնը:

Չուկչին պատմեց, որ այնտեղ կենդանիներն ու մարդիկ երբեք չեն մրսում, այլ ուղղակի սառչում են: Չեն հիվանդանում, մեռնում են:

Երբ զգացի, որ նա լավ է խոսում ռուսերեն, հարցրի՝ հո ռուս չե՞ս:

— Ոչ,— ասաց,— ես չուկչի եմ, լավ եմ խոսում ռուսերեն, որովհետև ավարտել եմ Խաբարովսկի բժշկական ինստիտուտը, հիմա աշխատում եմ Ջիրյանկայում: Խնդրում եմ չմոռանաք, որ ես չուկչի եմ,— վերջում ասաց նա,— նախ չուկչի եմ ու որսորդ, հետո՝ բժիշկ: Իմ կինն ու երեխաները՝ նույնպես չուկչիներ են:

— Դու երևի հիմա աղ ես ուտում, հաց ես ուտում...

— Օհ, ոչ, ոչ, ի՞նչ եք ասում, աստված մի արասցե: Ես հո իմ թշնամին չե՞մ: Այդ դուք եք ձեր թշնամին: Միսը եփում, դեռ վրան էլ աղ եք ցանում, նըստում, հացով ուտում: Սարսափելի է:

— Դու ինչպե՞ս էիր սնվում Խաբարովսկում, բժիշկ,— անհամբերությամբ հարցրի ես:

— Այնպես, ինչպես սնվում եմ այստեղ՝ Ջիրյանկայում:

— Ճաշարանում այդպիսի ճաշեր չեն պատրաստում:

— Ես, առհասարակ, ճաշարան չէի մտնում, ինձ համար տհաճ էր տապակած մսի հոտը, եփած ձուկը: Նախ՝ ինչպե՞ս կարելի է մեռածի միսը եփել: Էդ բավական չի՝ վրան էլ աղ անել ու հացով ուտել: Ես ոչինչ չեմ հասկանում: Մի՞թե ձեզ չեն ասել, որ աղը հիդրոսկոպիկ նյութ է՝ խոնավություն, ջուր է պահում իր մեջ: Երբ աղ ես ընդունում, այն մնում է օրգանիզմիդ մեջ և ջուրն էլ է պահում օրգանիզմում, չի թողնում, որ հեռանա: Աղ և հաց ուտող մարդը ջրի կարիք շատ է զգում, ջուր շատ է խմում, և հենց դա շատ վնասակար է: Ցինգան առաջանում է նաև դրանից,— այսպես բացատրեց չուկչի բժիշկը և ավելացրեց,— ցինգան մահացու հիվանդություն է:

Չուկչին խոստացավ Բերինգի գերեզմանը ցույց տալ:

— Նա մեռել է ցինգայից և թաղվել է այս տեղերում: Դուք այդ գիտեք, գի-

տեք և շարունակում եք մեռնել, զարմանալի մարդիկ եք: Ինչո՞ւ ապրել չեք ուզում, ի՞նչ հիմայք կա մեռնելու մեջ, ինչին այդպես ձգտում եք: Այդ հացը, այդ աղը մի կերեք:

Այս հանդիպումից հետո երկու շաբաթ փորձում էի նրա պես սնվել՝ չէր ստացվում: Աշխատել չէի կարողանում, ուժերս արագորեն պակասում էին: Երբ մեկ էլ հանդիպեցի չուկչի բժշկին և պատմեցի անհաջողությանս մասին, նա այս անգամ ուրիշ խորհուրդ տվեց.

— Լավ, հասկանալի է,— ասաց,—հիմա դու դարձյալ առաջվա պես քո ուտելիքը կեր, բայց անպայման դրան ավելացրու մի պարտադիր սնունդ ևս. շատ սարսափելի, դառը դեղ է՝ էքստրատում պինին, բայց փրկում է մարդուն ցինգայից, օրական մի գդալ խմիր այդ հեղուկից: Այս տեղերում մի բարձր թուփ կա, կոչվում է սալանիկ՝ մացառաթուփ: Այս թուփը ձմեռնամուտին պառկում է մամուռի վրա, որպեսզի մնա ձյան տակ, չսառչի: Իսկ գարնանը բարձրանում է պառկած տեղից, նորից է կանգնում, որպեսզի շարունակի իր աճը: Իհարկե, փըշատերև սալանիկի փշերը բուժիչ են, մարդիկ հավաքում, եփում են, մի տեսակ մածուկ է ստացվում, այդ էլ հենց դեղն է՝ սալանիկ կամ էքստրատում պինին:

Հիշեցի, որ մեզ մոտ ցինգա հիվանդությունը հայերեն թարգմանված է լընդախտ բառով: Լնդախտը ցինգան չէ: Ցինգան ախտահարում է մարդու կամ կենդանու նյարդային համակարգը: Հիվանդը զրկվում է զգայնությունից: Մարմնի վրա խորը, թարախակալած վերքեր են առաջանում, այտուցվում են ոտքերը, փորը, դեմքը: Հիվանդը հրաժարվում է սննդից, միայն ջուր է ուզում և շատ է խմում: Ցինգայով էր հիվանդացել Ծալիկոն, ամբողջ օրը քնած էր, միշտ ջուր էր ուզում, ոչինչ չէր ուտում, հրաժարվում էր սալանիկ ընդունելուց: Երբ հիվանդությունն ավելի սաստկացավ, նըրան այլևս բարաքում պահել հնարավոր չէր: Բարաքից հանեցին: Անտանելի, ծանըր հոտ էր գալիս վրայից, փտախտի հոտ: Պառկեցրին դրսում, խարույկ վառեցին, որ չցրտահարվի: Մի գիշեր էլ կրակի մեջ էր ընկել ձեռքը, այրվել, ածուխ էր դարձել, բայց ինքը չէր զգացել:

Այդպես էր լինում նաև ցրտահարության ժամանակ:

Ցրտահարվել էր Գերասիմովի ձախ ձեռքը. հարբած էր եղել, չէր զգացել: Ներկայացել էր բժշկին: Մինչ բժիշկը անդամահատման գործիքներն էր ստուգում, Գերասիմովը չէր սպասել, գնացել էր լվացարանի մոտ իր աջ ձեռքով կոտրել իր ձախ ձեռքի դաստակն այնպես, ինչպես կոտրում են այրված փայտը, և գցել էր լվացարանի տակ դրված թասի մեջ, եկել, կանգնել էր բժշկի առաջ.

— Կապիր, բժիշկ:

Բժիշկը մի մաքուր շոր էր թաթախել ձկան յուղի մեջ, դրել դաստակի կտրված տեղում, կապել և ասել էր, որ գնա բարաք:

— Ինչո՞ւ այդպես արեցիր,— հարցրեցի ես:

Նա զարմացած նայեց ինձ և հանգիստ ասաց.

— Բա ի՞նչ անեի, թողնեի, որ բժիշկը ձեռքս կտրե՞ր: Այսպես ավելի լավ է:

Ցինգան և ցրտահարությունները անդըրբևեռյան երկրամասում տարածված աղետներ էին: Այնուամենայնիվ, կարելի էր խուսափել այդ աղետներից: Գազաններն անգամ զգում էին ու փորձում խուսափել: Սաստիկ սառնամանիքների ժամանակ, երբ ցուրտը հասնում էր վաթսուն աստիճանի և ավելի, նրանք սկըսում էին վազել, անընդհատ վազել մինչև լուսաբաց, լուսաբացին սկսում էր ջերմությունը բարձրանալ, հոգնած գազանները պառկում էին հանգստանալու: Ճերմակ կաքավներն, իմաստուն խլահավերն ու եղնահավերը ամբողջ գիշեր մնում էին ձյան տակ, և ձյունը նըրանց տաքացնում էր: Մկները և արջերը նույն ձևով էին պաշտպանվում: Արջերը քնում են շատ երկար, նրանք ավելի շատ քնած են, քան արթուն, որովհետև այդ անդրբևեռային շրջանում տարվա տասներկու ամիսներից տասը ձմեռ է լինում, բայց այստեղ էլ բնությունը օգնության է հասնում: Ճիշտ է, ամառը շատ կարճ է՝ երկու ամիս միայն, բայց չորս ամիս օրերը չեն մըթնում, արևը միշտ երկնակամարում է, գիշեր չի լինում, փաստորեն արջերը այդ չորս ամիսը չեն քնում: Իսկ չուկչին հասկանում է բնության լեզուն և ինքն էլ պահպանում է բնությունը՝ իր համար և տայգայի համար:

**ՔՐԻՍՏՈՖ ՀԱՅՈՒԼԵՐ**
**Հոգեբան**

# Վախի տարբեր ներգործությունները

Քննությունից առաջ համակած վախը տարբեր մարդկանց վրա ուղղակի հակառակ ազդեցություն կարող է թողնել: Մարդկանց մեծամասնությանը ծանոթ է վախի այդ ներգործությունը՝ սպորտային ելույթներից առաջ, մեծ դահլիճի առջև զեկուցումով հանդես գալիս: Հուզմունքի որոշակի աստիճանը մեծ ուժ է ներարկում: Բայց եթե հուզմունքը չափազանց մեծ է, կարող է կասեցնել մեր մտավոր ու ստեղծագործական ընդունակությունները և վնասել մեր հիշողությանը:

Ի՞նչ է, այնուամենայնիվ, վախը: Վախի զգացումը ծանոթ է յուրաքանչյուր մարդու: Այս՝ «սարսափ», «հուզմունք», «լարվածություն», «տենդ», «խուճապ», նաև՝ «ստրես» անվանումներն ունեն բացասական գունավորում: Վախը, ինչպես և կատաղությունը, զայրույթն ու ջղայնությունը, «բացասական զգացումներ» են համարվում: Սակայն վախն ավելին է, քան զգացումը, սա մի վիճակ է, որն ամբողջովին ընդգրկում, համակում է մարդուն: Այն ազդում է բառացիորեն կենսական բոլոր պրոցեսների վրա, առաջացնելով սրտի արագ խփոց, գունատություն, չորության զգացում բերանում, դող, քրտնածություն, ոտքերի թուլություն...

Երկարատև բացասական հույզերը ըզգալիորեն խախտում են օրգանիզմի կենսական ֆունկցիաները, հանգեցնելով հիվանդության: Այդպիսի հիվանդությունների հատկապես ենթակա են այն անձինք, ովքեր չեն կարողանում ճիշտ հասկանալ իրենց մեջ առաջացած վախի զգացումը:

ՎԱԽԸ ԿՅԱՆՔԻ ՄԻ ՄԱՍՆ Է. Ճիշտ ցավի պես, վախն էլ զգուշացնող, կյանքը պահպանող ազդանշան է: Այն արհամարհելն անհետևանք չի մնում: Կարծել, թե վախն անպայման վախկոտություն է նշանակում, ծանր և հաճախ ողբերգության հասցնող մոլորություն է: Կարելի է քաջ լինել և վախ զգալ, լինել վախկոտ և վախ չզգալ:

Երիտասարդները հաճախ այսպես են մտածում. եթե վախ չես զգում, ուրեմն «տղամարդկային արիություն ես ցուցաբերում»: Ոչ, դա անհոգի շաբլոն է: Օրինակ, ամոթալի և անտեղի ոչինչ չըկա բարձրությունից վախենալու մեջ: Վախը ստիպում է փախչել կամ պաշտպանական ուրիշ միջոցներ ձեռնարկել: Դա բնական է: Սակայն պատահում է, որ որոշակի հանգամանքներում վախը համարյա լրիվ ընկճում է մարդուն: Նա վախենում է նայել պատուհանից, կամրջով անցնել, բարձրանալ վերելակով: Հոգեկան կապերը կարող են շատ բարդ լինել, բայց միշտ գործում է միևնույն խուսափելու մեխանիզմը: Վախ առաջացնող իրադրությունից խուսափելով, մարդը սկսում է խույս տալ բոլոր նմանատիպ իրավիճակներից, և առաջանում է մեկուսացման շրջան, որից դժվար է լինում դուրս պրծնել:

Այլ պրոբլեմ է մարդկանց առնչվելու ընթացքում առաջացող վախը՝ որևէ մեկին քննադատելու, իր կարծիքը համարձակորեն պաշտպանելու, կոնֆլիկտի գընալու և պատասխանատվությունն իր վրա վերցնելու: Մարդը համակերպվում, հարմարվում է շրջապատում ստեղծվող կարծիքներին, խորը անբավարարվածություն ապրում: Այդպիսի վարքի խորքում հաճախ թաքնված է դուր չգալու վախը, հատկապես նրան, ում ինքն է սիրում և ուզում է դուր գալ: Կյանքի նըման վարքագիծը հանգեցնում է մարդկանց միջև իսկական մարդկային, հավասար հարաբերությունների խզման:

ԻՆՉՊԵՍ ՀԱՂԹԱՀԱՐԵԼ ՎԱԽԸ. Նախ և առաջ մեկընդմիշտ պետք է ընդունել, որ վախը ծանոթ է յուրաքան-

չյուրին. այն կյանքի նույնպիսի բաղադրամաս է, ինչպես ցավը, ուրախությունը, երջանկությունը կամ անհաջողությունը: Բայց չի կարելի ապրել վախի թելադրանքով, իսկ խույս տալ այն իրավիճակներից, որոնք այդ զգացումն են առաջացնում՝ նշանակում է կյանքը դարձնել անտանելի տխուր: Հանճարեղ Գյոթեն էլ մեծ բարձրություններից ինչ-որ ժամանակ սարսափել է, և այդ սարսափը հաղթահարել է՝ իրեն ստիպելով քայլ առ քայլ վեր բարձրանալ:

Վախը հաղթահարելու երկու միջոց կա. կամ ատիճանաբար գնալ դեպի վտանգը, կամ էլ անմիջապես վճռական պայքար մղել նրա դեմ: Երկուսն էլ դժվար իրագործելի են, բայց ով հաղթահարում է վախը, դառնում է իր ուժերի վրա վստահ, ազատ, անկախ անձնավորություն: Վախի դեմ պայքարել կարող է յուրաքանչյուր ոք: Իսկ նրանց, ովքեր դժվարանում են հանձնել քննությունները, ովքեր վախից և հուզմունքից մոռանում են գիտեցածը, օգտակար է իմանալ հետևյալ կանոնները.

1. Քննության պատրաստվելու ժամանակը օգտագործել ինտենսիվ կերպով և հենց սկզբից: 2. Քննության նախորդ օրը պարապել մինչև ճաշ, ապա հանգստանալ, զբաղվել առօրյա գործերով: 3. Քննության ժամանակ միտքը կենտրոնացնել կոնկրետ հարցի վրա, չմտածել գնահատականի, փառասիրության, արտաքին տեսքի և այլ մանրուքների մասին: Եվ ոչ մի դեպքում մի ձգտեք հատկապես գերազանց արդյունքի հասնել: Թող այդ արդյունքը ինքն իրեն գա...

Ա. ՊՈԼԻԿՈՎՍԿԻ

# Խորհուրդներ անվճռական բարեկամիս

Մենք նոր ենք ոտք դնում կյանք, իսկ մրցությունը բուռն կերպով առաջ է ընթանում: Ստուգողական քննություններ, ընավորությունների, հոգիների, «բռունցքների» և ստեղծագործական ունակությունների բախում՝ ո՞վ է ավելի խելացի, ո՞վ է ուժեղ, ո՞վ է ավելի համարձակ: Մենք դեռ նոր-նոր ենք դուրս եկել ծննդական սիրո պահպանիչ կեղևից, իսկ մեզ արդեն համարյա ոչինչ չեն ներում՝ դպրոցում, ինստիտուտում, կյանքում: Թանաքի կաթիլի համար «երկու» են նշանակում, հավասարման մեջ սխալ թույլ տալու համար անընդունակ անվանում, բնածին երկչոտության համար անմիջապես վախկոտի պիտակ են փակցնում:

Ինչպե՞ս վարվել: Ինչպե՞ս չկորցնել հավատը սեփական անձի հանդեպ: Ինչպե՞ս դիմանալ կյանքի այս ճնշմանը և ի վերջո հասնել նպատակին: Ինչպե՞ս չհուսահատվել, սեփական անձի վրա խաչ չքաշել, երբ անհաջողությունները կարկտի պես թափվում են գլխիդ:

Նախ և առաջ չհավատալ նրանց, ովքեր քեզ վախեցնում են, թե աղետ կլինի, ողջ կյանքդ կխեղվի, եթե դու այսօր «հինգի» չհանձնես քննությունդ: Հիմարություն: Ստուգողականից «երեք» ստանալ, ինստիտուտ չընդունվել, ուսուցչի կամ պետի բացասական վերաբերմունքին արժանանալ, իհարկե, հաճելի չէ: Գրող Իվան Բունինը երկտարեգի է եղել, նկարիչ Սեզանին նկարչության մեջ անընդունակ են համարել, օդաչու Չկալովը նախքան հերոս դառնալը պատժվել է խուլիգանության համար: Ի՞նչ կլիներ նրանց հետ, եթե նրանք հուսահատվեին, ընկճվեին հոգով և հրաժարվեին իրենց առջև դրված նպատակից:

Ինչ փորձության էլ ենթարկվեք, այսօր ինչ էլ պատահի, իմացեք, որ վաղը դուք իրավունք կունենաք ամեն ինչ նորից սկսելու: Լև Տոլստոյը նոր կյանք սկսեց 82 տարեկանում: Փորձեցեք ձեր այսօրվա կյանքին նայել վաղվա, մյուս օրվա աչքերով: Ջահել ու վճռական եղեք, իսկ երբ ամեն ինչ իմաստավորեք, ինքներդ ձեզ նայեք իմաստուն ժպիտով, մեղմ հումորով: Ձեր հոգու մի մասով ապագայի մեջ ապրեք, այսօրվանը կանցնի, ցավը կմեղմանա, ներվերը կազատվեն ավելորդ ծանրաբեռնվածությունից:

Վախենո՞ւմ եք: Գիշեր-ցերեկ ձեզ կրծում է փոքրիկ, դաժան գազանիկը՝ չըկարողանալու, չհասցնելու, չհասկանալու վախը: Սարսափում եք ձեր վրա դրված



հույսերը իրականացնելու անկարողու-թյունից, մարդկանց մոտ անհարմար դրության մեջ ընկնելուց, կյանքում ան-հաջողակ լինելուց:

Հանգիստ: Թուլացրեք ներվերը: Կյան-քը սպրինտ չէ, այլ՝ մարաթոն: Տոկու-նություն է պետք: Առաջին կիլոմետրերը կորցրածը ոչինչ չի կորցնում, եթե շա-րունակում է վազքը: Եվ մի հավատացեք նրանց, ովքեր ձեզնից հաջողություններ են սպասում ամեն ինչում և ամեն գնով՝ մաթեմատիկայում և կենսաբանությունում: «Դու պարտավոր ես, պարտավոր ես, պարտավոր»: Ոչ, դա ճիշտ չէ, եթե նույ-նիսկ այս խոսքերը ասում են ձեզ բա-րի կամեցող մարդիկ: Բոլոր ճանա-պարհներով միաժամանակ մի վազեք, այգում բոլոր խնձորները միանգամից պոկել մի փորձեք: Միայն այն մրցույթ-ներին մասնակցեք, որոնց դուք ինքներդ եք որոշել մասնակցել:

Հետաքրքրասեր եղեք: Ռոբինզոն Կրուզոն ապրեց անմարդաբնակ կղզում, մի՞թե դուք չեք դիմանա այնտեղ, ուր կընկնեք ձեր հերթական անհաջողու-թյունից հետո: Պետք չէ համաշխարհա-յին ողբերգություն դարձնել այն ամենը, ինչ կատարվում է ձեզ հետ: Հաղթա-նակներն ու պարտությունները հավա-սարապես կհարստացնեն ձեզ, եթե դուք կյանքին վերաբերվեք հետաքրքրությամբ և բավականություն ստանաք դրանից: Արկածներ սիրեք և մի մտածեք, թե դը-րանք լոկ Դյումայի և Դրյուոնի գործե-րում են: Մեր կյանքը լի է արկածներով, միայն թե չպետք է խուսափել դրանցից և ինքափորձությունից: Եթե համոզված եք, որ դուք ճիշտ եք, անվարան կոնֆ-լիկտի մեջ մտեք, եթե նույնիսկ հաղթե-լու հավանականությունը մեկն է՝ հար-յուրի դիմաց: Վերջապես մենք մի բան պիտի ունենա՞նք մեր թոռներին պատ-մելու:

Մի վախեցեք ոչ թանաքի բծերից, ոչ սխալներից, ոչ էլ սեփական զգացմունք-ներից: Ռիսկի դիմեք: Ապրեցեք:

**Թարգմանեց Ա. ՄԱՆԱՍՅԱՆԸ**

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

Երբ ներս մտա, նա դիմահարդարվում էր: Հետո դրեց խոշոր քթով ու կախ ընկած բեղերով կեղծամը, վեր քաշեց փայլփլուն սապոգները, հագավ բեմական կոստյումը, ապա ասաց.

— Դեռ ժամանակ ունենք,— ու տեղավորվեց իմ դիմաց, և ես տալիս եմ վաղուց նախապատրաստած առաջին հարցս.

— Ինչո՞վ էիք զբաղվում վարժեցնող դառնալուց առաջ:

— Մոսկվայի Գորկու անվան կուլտուրայի զբոսայգում մոտոցիկլ էի քշում ուղղահայաց պատի վրա: Դա 50-ական թվականների սկիզբն էր: Այդ ատրակցիոնը մեծ ժողովրդականություն էր վայելում: Տեխնիկան ու վարպետությունը երբեմն դավաճանում էին: Ես փաստորեն կատարում էի մահացու համար: 1956-ին ստեղծվեց հայկական կրկեսային կոլեկտիվը, որի կազմում էլ սկսեցի աշխատել իբրև վարժեցնող: Մայրս վերջապես հանգիստ շունչ քաշեց, քանի որ գազանները այնքան վտանգավոր չեն, որքան ուղղահայաց պատը:

— Իսկ մինչև ա՞յդ:

— Մասնակցել եմ պատերազմին, Կերչում երեք վերք եմ ստացել: Վերադարձա, որպես առաջին կարգի հաշմանդամ և ուղիղ երեք տարի պայքարել, փորձել եմ բուժել ինքս ինձ: Այդպես հաշմանդամության կարգս իջեցրեցի երկրորդ, այնուհետև երրորդ, հետո առհասարակ դադարեցի այդ մասին մտածել: Ինձ օգնեցին սպորտն ու կամքը՝ շատ անհրաժեշտ մի բան առօրյա կյանքում և հատկապես կրկեսում: Որոշակի դեր խաղաց նաև նոր աշխատանքի մեջ անհագ, համարյա մոլության հասնող ձգտումը՝ վտանգավոր, կուլմինացիոն վիճակների մեջ հայտնվելու: Իմ այդ տարօրինակ վարքի պատճառով, մայրս շատ ծանր պահեր է ապրել:

Թիկունքումս աղմուկով բացվեց դուռը:

Մտնողին ես չտեսա, խոսակիցս նայեց դռան կողմն ու ասաց.

— Ժամանակն է, շուտով կսկսվի երկրորդ բաժինը: Եթե ուզում եք, միասին դուրս գանք, ճանապարհին կզրուցենք:

Ես պատրաստակամությամբ գլխով արեցի, շրջվեցի, որ դուրս գամ և... տեղումս սառեցի: Շեմքին կանգնած էր հսկայամարմին ու անվրդով Մանուկը:

ՌԱԶՄԻԿ ԴԱՎՈՅԱՆ

# Առյուծի փախուստը

Տոնական օր էր, երկինքը՝ լուրթ,
դեռ փողոցներն էլ՝ մաքուր ջրած,
օդը՝ զրնգուն և անհագուրդ,
և լոզունգները՝ վառման գրած:

Առյուծն էլ ներքև իջավ տնից
և շների հետ կանգնեց հերթի,
որ մի բան գնի՝ ոսկրից-բանից,
և հետո դուրս գա դեռ շքերթի:

Սակայն շները գոռալով,
կամաց սեղմեցին նրան պատին.—
փախավ առյուծն իր առյուծ հալով,
Ծաղրատեղ դառած շրջապատին:








— Պատշաճ չէ, Մանո՛ւկ, հյուրին թույլ տուր անցնել:

Մանուկը ընկրկեց, և ես դուրս սահեցի: Քանի որ նա ճանապարհը հրաշալի գիտեր, անշտապ ու արժանապատվորեն առաջ ընկավ. գլխավորելով մեր երթը:

— Արդեն 30 տարի Մանուկն ինձ հետ է: Այդ ընթացքում իմ բոլոր էկզոտիկ կենդանիները փոխվել են, այն էլ մի քանի անգամ: Իսկ, ահա, Մանուկը մնաց: Կես խոսքից հասկանում ենք իրար: Մի նայեք, որ այդպես մարմնեղ է, բնավորությամբ շատ է քնքուշ, միայն թե նեղացկոտ է, կոպտություն կամ բըղավոց բոլորովին չի տանում: Օրերով կփքվի ու հետս չի խոսի: Լրագրողներից մեկը մի առիթով հարցրեց. «Քանի՞ անգամ պիտի խփես գետաձիուն, որ քեզ լսի»: Ես էլ իմ հերթին հարցրի, թե երեխա ժամանակ իրեն շա՞տ են ծեծել: «Բոլորովին»,— ասաց նա: «Ուրեմն ինչո՞ւ եք մտածում, որ տարիքն առած գետաձին ավելի անհասկացող է, քան մի մատ երեխան: Ինչո՞ւ պիտի անպայման ծեծես»: Նա էլ մեզ պես սիրում է քնքշություն, հասկանում է՝ երբ գովում ես, երբ հարգանքով ես վերաբերվում: Բացի այդ, շատ է սնափառ: Ո՜նց էր մեծամտացել, երբ Ֆինլանդիայում մեր ելույթներից հետո այնտեղ սկսեցին պոլաստմասսայից գետաձիեր արտադրել՝ Մանուկ անունով: Իսկ թերթերից մեկում բացվեց մի խորագիր, որ թեև կարևոր հարց է բարձրացնում, բայց վերնագիրը շատ էր երգիծական՝ «Ինչ է մտածում Մանուկն այս կապակցությամբ»: Ֆինլանդիայից հետո երկար ժամանակ ես ջանում էի հասկացնել Մանուկին, որ ատրակցիոնի ղեկավարը համենայնդեպըս ես եմ, ոչ թե ինքը: Ի միջիայլոց, Մանուկից առաջ մի գետաձի ունեի Յուսի անունով: Երեք ամիս անց նրան ետ տարան կենդանաբանական այգի, քանի որ նա այդպես էլ արտիստ չդարձավ: Այնպես որ, դերասանական ընդունակություն միայն մարդիկ չէ, որ ունենում են:

— Ձեր ատրակցիոնում կան կենդանիներ, որոնց հնարավոր չէ վարժեցնել, նկատի ունեմ վիշապներին..

— Մի անգամ ելույթի ժամանակ առաջին կարգում նստածներից մեկը մի ռեպլիկ թողեց. «Այս օձերին հատուկ սառեցնում են, որ չխայթեն»: Իրականում օձին չի կարելի սառեցնել, նրանք առանց այդ էլ սառն են: Հակառակը, մենք հատուկ հզորության լամպերով տաքացնում ենք նրանց: Ինչ վերաբերում է խայթելուն, պատահում է նաև, որ խայթում են: Կենդանին, որն ունի 96 ատամ, չի կարող որևէ մեկին գոնե մեկ անգամ չխայթել, դա նույնիսկ «պատշաճ» էլ չէ: Վիշապներին իսկապես հնարավոր չէ վարժեցնել, ուղղակի պետք է լավ իմանալ նրանց վարքը, ռեակցիան, լինել զգոն, վստահ ու ճշգրիտ: Օձերի հետ աշխատելիս պետք է կոփել որոշակի սառնասրտություն: Այնպես. որ, վիշապների հետ ես վարժեցնում եմ ավելի շատ ինձ, քան նրանց:

— Նշանակում է՝ ելույթի համար կարող են ձեզ առաջարկել բոլորովին ուրիշ մի օձ:

— Իհարկե, միայն թե ցանկալի կլիներ՝ ոչ թունավոր:

— Ձեր թատերախմբում Մանուկից բացի կան նաև հինգ վիշապներ, մեկ ուղտայծ, մի քանի թութակ և արագիլներ... Ուրի՞շ:

— Դուք մոռացաք զեբրին և Միկի շիմպանզեին: Ցավում եմ, որ նրան չեք կարող տեսնել, հիվանդ է:— Վարժեցնողը գրպանից հանեց մի լուսանկար,— հրաշք է, չէ՞... Նա խաղաց իմ «Գողացել են զեբր» ֆիլմում: Ավելի ուշ ես համագործակցեցի Կուրլյանդսկու և Հայթի («Դե, սպասիր» շարքի հեղինակների) սցենարով նկարահանված «Դոնի և Միկի նոր արկածները» ֆիլմի աշխատանքներին: Երկուսն էլ մեծ հաջողություն ունեցան և երկու անգամ ցուցադրվեցին կենտրոնական հեռուստատեսությամբ: Ես արդեն մտածում էի լըրջորեն զբաղվել ռեժիսուրայով: Կատակում եմ, իհարկե, բայց կարծում եմ մի մասնագիտությունը, մի զբաղմունքը քիչ է ինքնաարտահայտման համար, միշտ մի անծանոթ բան էլի ձգում է: Ինձ, օրինակ՝ դրվագման արվեստը: Վերջին տարիներին ես դրանով եմ զբաղվում և, կարելի է ասել, պրոֆեսիոնալ եմ: Փորձում եմ նաև մետաղի վրա գեղարվեստական զոդում կատարել: Այս ամենը ինձ վերջերս սովորեցրին Թբիլիսիում:

— Դուք Թբիլիսիի՞ց եք:

— Մոսկվա տեղափոխվել եմ Թբիլիսիից, բայց արմատներով Լենինականցից եմ:

Մենք դեռևս կուլիսներում էինք: Նա գրպանից հանեց մի լուսանկար ու պարզեց ինձ:

— Ահա ձեզ ևս մի հրաշք: Կարինեն է, թոռնիկս: Յոթ տարեկան է:

Փոքրիկը ուսերին հասնող առատ մազեր ունի, զուլալ հայացք, և թվում է՝ ուզում է իմանալ աշխարհի բոլոր գաղտնիքները:

— Նա բացարձակապես չի վախենում կենդանիներից, առանց երկյուղի մոտենում, նայում է: Նրա հայրն էլ, այսինքն՝ տղաս, երեխա ժամանակ այդպիսին էր: Բայց ես չէի ուզում, որ նա էլ վարժեցնող դառնա, և լավ է, որ բըժիշկ դարձավ: Մեր աշխատանքը ծանր է, անհանգիստ, վտանգավոր: Չեմ ասում, թե բժիշկներինը հեշտ է, բայց մեզ մոտ միայն տաղանդը կամ աշխատասիրությունը քիչ է, հարկավոր է նաև բախտ, հաջողություն: Գազաններին հետ այնքան էլ հեշտ չէ, նրանց հետ միշտ գլուխ չես հանի: Ես ու Մանուկը, ահա, լեզու ենք գտել: Բայց նույնիսկ նա հաջողացրեց ինձ չորս ամիս շարքից հանել: Հիշո՞ւմ ես, Մանուկ:

Մանուկը գլխով արեց՝ եղել է այդպիսի բան:

— Երբ ուշքս վրաս եկավ, մտածեցի՝ չլինի՞ նեղացրել եմ: Ով գիտե, ինչ է անցել նրա մեծ գլխով:Կենդանիների վարքը անիմանալի է, նախապես ոչինչ չես գուշակի: Ուրեմն, երբ ուշքի եկա, առաջին գործս նրան այցելելն էր: Մտա վանդակ և նրա տեսքից հասկացա, որ փոշմանել է: Հարցրի՝ ինչպե՞ս են գործերդ, Մանուկ, և մենք հաշտվեցինք:

— Ի՞նչ է կրկեսը,— վերջին հարցն եմ տալիս:

— Կրկեսը հավերժական արվեստ է: Սա ասում եմ ոչ թե այն բանի համար, որ կրկեսի աշխատող եմ: Այն օգնում է մարդուն հաղթահարել ինքն իրեն, սեփական թուլությունը, երկյուղն ու վեհերոտությունը: Կրկեսը հետաքրքրում է բոլոր մարդկանց՝ անկախ տարիքից: Տըհաճ է, երբ լսում ես այսպիսի արտահայտություն՝ «դե կրկես է, էլի», կամ նըման մի բան: Ես այն կարծիքին եմ, որ կրկեսը արվեստներից միակն է, որը չի հանդուրժում ամենաաննշան կեղծիքըն անգամ: Այստեղ հնարավոր չէ մի կերպ, ձեռի հետ աշխատել: Բավական է մի փոքր վրիպել դանակ նետելիս, ակրոբատիկ ցատկի կամ ձեռնածության ժամանակ, և համարը տապալված է: Կրկեսի արտիստները համարյա ազատ ժամանակ չեն ունենում: Անհրաժեշտ է մշտական ներքին կարգուկանոն, մաքուր, ճշգրիտ աշխատանք՝ առանց սխալի: Եվ եթե ամեն տեղ աշխատեն այնպես, ինչպես կրկեսում, կյանքն ավելի տանելի կլինի:

Այդ պահին Մանուկը քաշեց նրա ձեռքը, և նա հրաժեշտ տալով, անհետացավ վարագույրի ետևում: Ծուտով այնտեղից լսվեց երաժշտության և հաղորդավարի բարձր ձայնը.

— Ելույթ է ունենում ՀՍՍՀ ժողովրդական արտիստ Ստեփան Իսահակյանը:

**Հարցազրույցը վարեց**
**ՌՈՒՍԼԱՆ ՍԱՂԱԲԱԼՅԱՆԸ**

# ՔԻՄԻԱԿԱՆ ՏԱՐՐԵՐԻ ԱՆՈՒՆՆԵՐԸ

Առ այսօր մարդկությանը հայտնի են 107 քիմիական տարրեր, որոնցից յուրաքանչյուրն ունի իր անունը, պարբերական համակարգում համապատասխան կարգաթիվն ու գրելու կերպը՝ քիմիական նշանը:

Ինչպե՞ս և ի՞նչ սկզբունքով են անվանակոչվել քիմիական տարրերը:

Անվանումների մի մասը կապված են այն երկրների հին ու նոր անունների հետ, որտեղ հայտնաբերվել են: Պղնձի լատիներեն անվանումը՝ **կուպրում**, կապված է Կիպրոս կղզու հետ, որը շատ հարուստ է եղել պղնձի հանքերով: 1875 թվականին ֆրանսիացի քիմիկոս Լեկոկ դը Բուաբոդրան հայտնագործեց քիմիական նոր տարր, որը անվանվեց Ֆրանսիայի հին անունով՝ Գալիա-**գալիում:** 1879-ին Կլևեյի հայտնագործած նոր տարրը անվանվեց Նորվեգիայի հին անունով՝ **թալիում:** 1839-ին ֆրանսիացի քիմիկոս Պերյեն իր հայտնագործած տարրը կոչեց **ֆրանսիում:** 1844-ին ռուս քիմիկոս Կլաուսը իր հայտնագործած նոր տարրը անվանեց **ռութենիում**՝ ի պատիվ Ռուսաստանի: Գերմանացի քիմիկոս Վինկլերի 1879-ին հայտնագործած նոր տարրը կոչվեց **գերմանիում:** Նույն սկզբունքով անունն են ստացել **սկանդիում, պոլոնիում** քիմիական տարրերը:

Քիմիական տարրերի անունների մի մասն էլ կապված է մոլորակների անունների հետ: Այսպիսի տարրերից են ուրանը, նեպտունիումը, պլուտոնիումը:

Հետաքրքիր է այն փաստը, որ քիմիական որոշ տարրերի անունների ընտրության ժամանակ օգտագործվել են հին Հունաստանի, սկանդինավյան և այլ երկրների լեգենդների և առասպելների մի շարք հերոսների անունները: Նշենք այդ տարրերը: **Նիոբիում** տարրի անվան հիմքում Թեբեի արքա Ամփոնի կնոջ՝ Նիոբեի անունն է, **տանտալ** տարրի անունը վերը նշված Նիոբեի հոր՝ Տանտալոսի: 1828 թվականին շվեդ գիտնական Բերցելիուսը հայտնագործեց քիմիական նոր տարր և այն անվանեց իր հայրենի Սկանդինավիայի առասպելական հերոսներից մեկի՝ ամպրոպի աստված Թորայի անունով՝ **թորիում**:

1945 թվականին ամերիկացի քիմիկոսներ Մարինովսկին և Կորիելը իրենց հայտնագործած քիմիական տարրը անվանեցին **պրոմեթիում**՝ ի պատիվ հին հունական դիցաբանական հերոս Պրոմեթևսի: Այստեղ թերևս կա որոշ տրամաբանություն: Չէ՞ որ ըստ հին դիցաբանության Պրոմեթևսը մարդկանց հաղորդակից է դարձրել արվեստին, երկրագործությանը, բժշկությանը և, որ ամենակարևորն է, մարդկանց պարգևել է կրակը, որն օգտագործվել է մետաղներ հալելու և մշակելու համար:

1801 թվականին մեքսիկացի քիմիկոս Անդրեաս Ռիոն Մեքսիկայի կապարահանքերում հայտնաբերեց քիմիական նոր տարր: Այդ տարրը Ռիոն անվանեց **պանքրոմ**, քանի որ աղերի գույնը նման էր քրոմի աղերի գույնին: Հետագայում, պանքրոմը վերանվանվեց սկանդինավյան դիցաբանության մեջ հայտնի երջանկության աստվածուհի Վանադիսի անունով՝ **վանադիում**:

Քիմիական մի շարք տարրերի անունները անմիջականորեն կապված են միացությունների ֆիզիկական և քիմիական հատկությունների հետ: Այսպես, **ջրածին** տարրի անունը **ջուր** և **ծնել** բառերից է, քանի որ այդ տարրի ամենաբնորոշ քիմիական հատկությունը ջուր գոյացնելն է: **Ֆտոր** բառը ստուգաբանվում է ավերող, քանդող: Նույնիսկ մութ սենյակում այն ջրածնի հետ փոխազդեցության մեջ է մտնում պայթյունով:

Մոտ երեք հարյուր տարի առաջ համբուրգցի ալքիմիկոս Բրանդի հայտնագործած քիմիական նոր տարրը մթության մեջ լուսարձակում էր: Ահա այդ հատկության շնորհիվ էլ այն անվանվեց **ֆոսֆոր**, որ հունարեն նշանակում է լուսակիր: **Քլորն** իր անունը ստացել է հունարեն քլորոս բառից, որ նշանակում է դեղնականաչավուն: **Բարիում** քիմիական տարրի անունը կապված է լատիներեն բարոս բառի հետ, որը նշանակում է ծանր: Բարիումի մի շարք միացություններ ունեին բավականին մեծ խտություն: Արժե նշել, որ անցյալ դարի հայատառ քիմիական գրականության մեջ բարիումը անվանվել է **կշռուն**՝ մի անգամ ևս շեշտելու համար ծանրություն, կշիռ բառը:

1825-ին հայտնագործվեց քիմիական նոր տարր, որի սուր ու տհաճ հոտի պատճառով Բալարտն ու Էրստեդը անվանեցին **բրոմ** (հունարեն նշանակում է գարշահոտ): **Յոդ** անունը արդեն փոքր ինչ բանաստեղծական է և կապված է հունարեն յոդոս բառի հետ, որը նշանակում է մանուշակագույն, քանի որ յոդի բյուրեղների սուբլիմացման ժամանակ նրանց վրա գոյանում է մանուշակագույն «ամպ»: Երկար տարիներ հայատառ գրականության մեջ յոդի այդ հատկոթյան հիման վրա էլ այն անվանել են **մանիշ**:

Հետաքրքիր է **սիլիցիում** քիմիական տարրի անվան ստուգաբանությունը: Պարզվում է, որ սիլիցիում բառը հունական ծագում ունի և թարգմանաբար նշանակում է ժայռ: Իսկ ի՞նչ կապ ունի քիմիական տարրը ժայռի հետ: Այս հարցի պատասխանը մեզ տալիս են սիլիցիումի բնական միացությունները: Քանի որ սիլիցիում ստանում են սիլիցիումի բնական միացություններից: Սիլիցիումի միացությունները, որոնք չափազանց շատ են տարածված երկրի վրա, մարդն օգտագործել է դեռ քարե դարում,

բարե գործիքներ պատրաստելու համար: Հենց կայծքարը և կվարցե ավազը, որոնք սիլիցիումի բնական միացություններից են, օգտագործվում էին ամենատարբեր նպատակներով: Ի վերջո, երկրակեղևի և ժայռապարների հիմնական մասը սիլիցիումի դիօքսիդից է բաղկացած:

Ուշագրավ է նաև **արսեն** քիմիական տարրի անվան ստուգաբանությունը: Արսեն հունարեն արսին բառն է, որը նշանակում է ուժեղ, առնական: Արսենի միացություններից շատերը չափազանց ուժեղ թույն են, այստեղից էլ՝ նրա անվան բացատրությունը:

**Ալյումին** քիմիական տարրը հայտնաբերվել է 1825-ին, մինչդեռ նրա պաղլեղները՝ շիբերը, հայտնի էին մեր թվարկությունից առաջ: Շիբին լատիներեն անվանում են ալումեն, որտեղից էլ՝ ալյումին բառի ծագումը: Անցյալի հայաստան գրականության մեջ ալյումինը անվանվել է պաղլեղածին:

**Ալկալի** (ալ-կալի) արաբական բառ է և նշանակում է հիմք, հիդրօքսիդ: Ահա և այստեղից էլ **կալիում** (կալի) քիմիական տարրի անունը, քանի որ կալիումի հիդրօքսիդը շատ ուժեղ արտահայտված հիմնային հատկություններ ունի:

Քիմիայի պատմության ամենահետաքրքիր էջերից մեկը կապված է **ազոտ** տարրի անվանման հետ: Առաջին անգամ այս տարրը հայտնաբերել է շոտլանդացի գիտնական Դանիել Ռեզերֆորդը, 1772 թվականին: Այդ գազը չէր նպաստում այրմանը, և կենդանիները նրա մթնոլորտում շընչահեղձ էին լինում: Այս պատճառով էլ այն անվանվեց ազոտ (հունարեն՝ ազոս), որ նշանակում է կյանք չպարունակող: Ո՞ւմ մտքով կանցներ, որ երկու հարյուր տարի հետո մարդիկ պետք է վերանայեն այս բացատրությունը: Չէ՞ որ ազոտ քիմիական տարրը կենդանի օրգանիզմների, մասնավորապես սպիտակուցների բաղադրիչ մասն է, իսկ կյանքը սպիտակուցային մարմինների գոյության ձև է:

Քիմիական տարրերի անունների մի մասն էլ անվանվել է նշանավոր գիտնականների պատվին: Այդ տարրերից ուզում ենք առանձնացնել հատկապես հարյուրմեկերորդը, որը հայտնագործվեց 1955 թվականին, ամերիկացի գիտնականներ Հարվիի, Չոպիի և Սիբորգի կողմից, որոնք հիշյալ տարրն անվանել են **մենդելևում**՝ ի պատիվ քիմիական տարրերի պարբերական համակարգն ստեղծողի՝ Մենդելեևի: Նույն սկզբունքով 1954-ին հայտնագործված նոր տարրը՝ **ֆերմիումը**, անվանվել է ի պատիվ իտալացի հռչակավոր ֆիզիկոս Էնրիկո Ֆերմիի: **Կյուրիումը** անվանվել է Մարի և Պիեռ Կյուրիների պատվին, **նոբելիումը**՝ շվեդ գյուտարար, Նոբելյան մրցանակի ֆոնդը ստեղծող Ալֆրեդ Նոբելիի պատվին, **կուրչատովիումը**՝ ի պատիվ սովետական ֆիզիկոս Իգոր Կուրչատովի, լոուրենսիումը՝ ամերիկացի ֆիզիկոս Լոուրենսի պատվին, **գադոլինիումը**՝ ֆինն քիմիկոս Գադոլինի պատվին:

Որոշ տարրերի անուններ դեռ չեն ստուգաբանված: Այդպիսիք են **ցինկը**, **ցերիումը**, **պալադիումը**, **էրբիումը** և **տերբիումը**: Մի քանիսի անունների բացատրությունն էլ խիստ կասկածելի է: Օրինակ, **երկաթ** քիմիական տարրի անունը ստուգաբանվում է այսպես: Եգիպտացիք երկաթն անվանել են **բենիպեր**, որը նշանակում է երկնային մետաղ, շումերները՝ **անբար**, որը նույն իմաստն ունի, հին հույները՝ **սիդերոս**, որը նշանակում է աստղային: Հայտնի է, որ երկաթը ազատ վիճակում գտնվում է միայն Երկրի վրա ընկած երկնաքարերում: Քիմիայի պատմությամբ զբաղվողների կարծիքով, հայերենում երկաթ բառը **երկնքից կաթած** բացատրությունն ունի: Այս կարծիքը, սակայն, լիովին հաստատված չէ: Լատիներեն **Ֆերում (երկաթ)** բառը նշանակում է ամրոց, հզոր կառույց, որը նույնպես վիճելի է:

ԱՍԱՏՈՒՐ ՓԱՇԱՅԱՆ

## ԺՊԻՏՆԵՐ



● Խաչմերուկի վրա տեղադրված մի ցուցանշանի վրա գրված էր. «Դեպի Տիմբուկտու: Իսկ եթե կարդալ չգիտես, հարցրու ճանապարհից ոչ հեռու բնակվող դարբնին»:

Թերևս սրանք փչոցներ են, բայց ես աչքովս եմ տեսել ճանապարհային ցուցանշաններ՝ ոչ պակաս հիմար բովանդակությամբ: Օրինակ, Բիգ-Ջեքքի սարի գագաթին, Նոր Հարավային Ուելս նահանգի հարավային ծովափին, գետակի անցման մոտ կարելի էր կարդալ «Եթե այս ցուցանշանը ծածկված լինի ջրով, անցումը վտանգավոր է»:

● Որքան շատ ենք սովորում,
Այնքան շատ ենք իմանում,
Որքան շատ ենք իմանում,
Այնքան շատ ենք մոռանում,
Որքան շատ ենք մոռանում,
Այնքան քիչ ենք իմանում:
Որքան քիչ ենք իմանում,
Այնքան քիչ ենք մոռանում,
Որքան քիչ ենք մոռանում,
Այնքան շատ ենք իմանում:

● Փոքրիկ Գրետան մտավ խոհանոց: Մայրիկը խոսում էր կաթնավաճառի հետ. նա կանգնեց և հայացքը հառեց նրանց վրա:

Մայրիկ— Դե, Գրետա, ի՞նչ պետք է ասես ջենտլմենին, որը քեզ համար ամեն օր համեղ կաթ է բերում:

Գրետա— (Ձեռքը սեղմելով): Շատ ուրախ եմ ձեզ տեսնելու համար: Ինչպե՞ս է ձեր կովը:

● Արտիստ Նիլսկին քսանհինգ տարի սիրահարների դերեր խաղալով, «իշխում» էր Ալեքսանդրյան բեմում, չնայած լրագրերը նրան անդադար հայհոյում էին: Թատրոնի ղեկավարությունը սիրում էր նրան, ուստի մամուլի կարծիքը հաշվի չէր առնում: Նիլսկին ծիծաղելով պատմում էր, որ լրագրերը հայհոյում էին իրեն նույնիսկ այն ներկայացումների համար, որտեղ ինքը չէր խաղում: Այսպես, օրինակ, գրում էին. «Փառք աստծո, այս ներկայացման մեջ մենք չտեսանք փայտե Նիլսկուն»:

Մի պիեսում նա խաղում էր այն հերոսի դերը, որին մեռած տանում են ձեռքերի վրա, բայց մի անգամ քիչ մընաց նրան վայր գցեին: Քննադատ Սոկոլովը այդ առթիվ գրեց. «Այ քեզ արտիստ, մեռած ժամանակ էլ անտանելի է»:

● Մի անգամ Լ. Ն. Տոլստոյը մեկնեց Տուլա, որտեղ սիրողական մի խումբ բեմադրում էր նրա «Լուսավորության պըտուղները» պիեսը: Բեմադրության կազմակերպիչները հրամայել էին փորձի ժամանակ ոչ ոքի ներս չթողնել, բացի հեղինակից:

Հանկարծ ներս է մտնում մուշտակ հագած մի գյուղացի՝ մորթե փափախը գլխին: Դռների մոտ հերթապահող ոստիկանը փորձում է փակել նրա ճանապարհը:

— Այդ ո՞ւր ես խցկվում, ծերուկ: Ետ դարձիր:

Բայց Լև Նիկոլաևիչը (այդ նա էր), շարունակում է աստիճաններով բարձրանալ դեպի փորձասրահ: Ոստիկանը հասնում է նրան և սկսում քաշքշել ու հրել ներքև:

— Ես Տոլստոյն եմ,— դիմադրելով բացատրում է գրողը:

Ոստիկանը ակնթարթորեն կերպարանափոխվում է, հանում է գլխարկն ու խնդրում ներել իրեն:

Այդ նույն պահին բեմում սկսվել էր այն դրվագը, որտեղ ծառան կոպտորեն դուրս է հրում ներս եկած գյուղացիներին:

Լև Նիկոլաևիչը նայեց, նայեց և ապա դարձավ դերակատարներին.

— Անբնական է: Հարկավոր է հրել ճիշտ այնպես, ինչպես քիչ առաջ ինձ հրում էր ոստիկանը:

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...



Ծառերն էլ հռչակավոր են լինում: Սուրբ Բարդուղիմեոսի կաղնին ամբողջ Ֆրանսիային էր հայտնի: Ըստ առասպելի, այդ տնկել են 1572 թվականին, երբ Բարդուղիմեոսյան գիշերը կաթոլիկները դաժան դատաստան տեսան հուգենոտների հետ: Կաղնին աճում էր ֆրանսիական թագավորների մերձքաղաքային նստավայր Ֆոնտենեբլոյի մոտերքում և ապրեց մինչև 1952 թվականը:

Գիտնականները որոշեցին ստուգել առասպելը, կաղնու բնի հատվածքի վրա հաշվելով տարեկան օղակները, որոնք, ճիշտ որ, մոտ 400 հատ էին: Հատվածքի վրա տարեթվեր նշվեցին՝ ահա ամենակենտրոնի օղակը, այն առաջացել է Բարդուղիմեոսյան ջարդի տարում: Ահա մի նուրբ, մուգ շերտ՝ առաջացած 1610 թվականին, երբ տեղի ունեցավ Հենրի 4-րդ թագավորի սպանությունը: Մի օղակ էլ՝ նշված 1789 թվականով, համընկնում է ֆրանսիական մեծ հեղափոխության տարեթվին: 1889 թվականի աճը համընկել է Փարիզում Էյֆելյան աշտարակի կառուցման տարեթվին: 1914 թվականի համաշխարհային պատերազմի տարվա աճն էլ նշեցին: Իսկ 1939 թվականի շերտն է, երբ սկսվեց 2-րդ համաշխարհային պատերազմը: Մարդկության պատմության չորս հարյուրամյակ է ամփոփված մի զորավոր կաղնեծառի կյանքում:

Սակայն ֆրանսիական կաղնին բոլորովին էլ ռեկորդակիր չէ ծառաշխարհի երկարակյացների մեջ: Կաղնիները երբեմն մինչև հազար տարի են ապրում, բայց դրանց կյանքն էլ կարճ է, համեմատած Կալիֆոռնիայի բարձր ժայռերի վրա աճող քիստոտ սոճու հետ: Այս սոճին երկրագնդի վրա աճող ամենահին ծառատեսակն է: Կալիֆոռնիական մի սոճի ապրել է 4900 տարի: Նրա տարիքը նույնպես որոշեցին տարեկան օղակների քանակով:

Որևէ մեկին կթվա, թե ծառի հատվածքի վրա երևացող բոլոր օղակները միանման են: Այդպես չէ. դրանք մեկ նեղ են, մեկ՝ լայն, կամ բաց գույնի են, կամ էլ՝ մուգ: Դրանք պայմանավորված են այս կամ այն տարվա եղանակի քմահաճույքով: Իսկ օղակների հաջորդականությունը ընդհանրապես երբեք չի կրկնվում: Օղակների տարեկան յահին առաջին անգամ ուշադրություն դարձրեց XV-րդ դարի իտալացի մեծ գիտնական և նկարիչ Լեոնարդո դա Վինչին: Այժմ այդ երևույթի նկատմամբ մեծ հետաքրքրություն են ցուցաբերում հնէաբանները:

Եթե հաջորդաբար իրար վրա դնելու լինենք ժամանակակից և արդեն հողի շերտերում փտող ծառերի տարեկան օղակների նկարները մի կլիմայական գոտու սահմաններում, ապա կստացվի ժամանակների խորքը գնացող ժամանակագրական մի սանդղակ: Քիստոտ սոճիները սանդղակի թվացուցակի սահմանները ետ տարան մինչ 8,5 հազար տարի: Այսպիսի սանդղակների օգնությամբ կարելի է թվագրել հնէաբանների գտածոները: Օրինակ՝ Շվեյցարիայի լճամերձ հայտնի շեներում, որտեղ մարդիկ բնակվել են մեր թվարկությունից առաջ դեռ 4-րդ հազարամյակից սկսած, գիտնականները կարողացել են ճշգրիտ կերպով ոչ միայն որոշել, թե որ հազարամյակում կամ հարյուրամյակում, այլ նույնիսկ՝ որ տարում են կտրտված ծառերը այս կամ այն շինության համար:




Գլխավոր խմբագիր՝ **ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԴԵՎՐԻԿՅԱՆ Գ., ԽԱՆԶՅԱՆ Գ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՅՈԼՅԱՆ Լ., ԾԵԿՈՅԱՆ Ա., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Դ., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՏՈՆՈՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ. (գեղարվեստական խմբագիր)։

Տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ԳԵՎՈՐԳՅԱՆ Գ.։

ԻՆԴԵՔՍ՝ 77806 ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.